# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## N: 8 ● 1984

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ԾՂՐԻԴԻ ՀԱՄԵՐԳԸ

— Ոսկեծածան ամռան գրկում,
Հասուն արտում,
Դեղին արտում,
Գիշեր ու զոր՝
Ծի-ղիրի-ղի՜դ:
Բա դու ե՞րբ ես քնում ծղրիդ:
— Մի ողջ աշուն լռում եմ ես,
Մի ողջ ձմեռ քնում եմ ես,
Մի ողջ գարուն տանը նստում
Եվ իմ համերգն եմ պատրաստում:
Ու երգում եմ մի ողջ ամառ
Արեգակի՝ կրակն անմար:
Ծի-ղիրի-ղի՜դ, ծի-ղիրի-ղի՜դ.
Հասկը խիտ է,
Հատիկը՝ խիտ:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# Ճամբարներում









Լուսանկարները՝

ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ

**(Հրազդանի № 9 դպրոցի աշակերտների շարադրություններից)**

Ամառը ժրաջան աշխատանքի ժամանակաշրջանն է: Ամեն մի ծառ, թուփ, ամեն ինչ գործողության մեջ է: Ծերամը կամաց իր մետաքսն է գործում, մեղուն մեղրահացն է մեղրով լցնում: Հիրավի, ինչքա՜ն տեսնելու բաներ կան: Ծերամի կերպարանափոխությունը, մեղուների բազմանալը, տեսակ-տեսակ բզեզները և այլն, բոլորն էլ իրենց կյանքի կայտառ եռուզեռի մեջ են: Իսկ ինչքա՜ն հիանալի է հանգստանալ ամառը Ծաղկաձորի «Նաիրի» ճամբարում, որը շրջապատված է գեղատեսիլ ծառերով, ծաղիկներով, բնության հրաշալիքներով: Ես չնայած կարճ ժամանակով էի գտնվում այնտեղ, բայց ստացա անմոռաց, հարուստ տպավորություններ:

**ԱՐԹՈՒՐ ԼԱԶԳՅԱՆ**
6-րդ դաս.

Իջնում էր մեղմ երեկոն, բացատում բոցկլտում էր «Խաղաղության խարույկը»,

և մենք՝ ճամբարականներս, ձեռք-ձեռքի տված երգում էինք:

Ավագ ջոկատավարի ղեկավարությամբ ցուցադրում էինք ազգային խաղեր, իսկ երգի-պարի խումբը կատարում էր հայկական գողտրիկ երգեր ու պարեր:

Առավոտյան խարույկը մարում էր, բայց նման հետաքրքիր ու բերկրալից օրերը մնում էին հիշողության մեջ:

Բոլորիս համար էլ դժվար էր բաժանվել ընկերներից, հատկապես ճամբարից:

...Եթե դուք չեք եղել որևէ ճամբարում, լավ կլինի հաջորդ ամռանը դուք էլ ճամբար գնաք, ծանոթանաք ճամբարի հետաքրքիր առօրյային:

**ԳԱՅԱՆԵ ԱԲՈՎՅԱՆ**

8-րդ դաս.

Հանքավանի «Լուսաբաց» ճամբարը գտնվում է անտառոտ սարերի գրկում, կարկաչուն գետի մոտ:

Մենք՝ ճամբարականներս, ամեն օր նախաճաշից հետո գնում էինք անտառ, սար բարձրանում, ծաղիկներ հավաքում և ծաղիկներից պսակներ հյուսում կամ նստում բչբչան գետի ափին, զրուցում, հիանում բնության տեսարաններով: Մեր ճամբարում օրերը ուրախ էին անցնում: Երեկոյան ուրախ ժամանց կամ սպորտային միջոցառումներ էինք անցկացնում: Ամսվա վերջին մենք խարույկ վառեցինք: Ամենահետաքրքիրը խարույկին մասնակցելն էր: Մասնակցում էին բոլոր ջոկատները: Երգում, պարում և արտասանում: Ճամբարից մեծ տպավորություններով վերադարձա:

**ԳԱՅԱՆԵ ՊՈՂՈՍՅԱՆ**

4-րդ դաս.

Ամառային արձակուրդը հիանալի եմ անցկացրել: Քրոջս հետ մեր բակի ճամբարում էի: Ոչ մի ամառ այդքան կազմակերպված չէր մեր արձակուրդը, ինչքան որ այս անգամ, որովհետև մեզ օգնում էին մեծերը՝ մեր ավագ քույրերն ու եղբայրները: Խարույկի շուրջը դասավորված փոքրիկ աթոռների վրա նստած, մեկը մի հետաքրքիր դեպք էր պատմում իր կյանքից, մյուսը՝ հեքիաթ, մեկը երգում էր, մյուսը՝ արտասանում: Տուն էինք գնում գոհ և ուրախ՝ մտածելով վաղվա անելիքների մասին: Մեր շենքում կային մարդիկ, երեխաներ, որոնք մինչև այդ իրար չէին ճանաչում: Բայց ճամբարում ծանոթացան և բարեկամացան:

**ԿԱՐԻՆԵ ԾԱՏՈՒՐՅԱՆ**

4-րդ դաս.

ԳԱԳԻԿ ՀԱՅՐՈՒՄՅԱՆ

## ՎԱՐԱՐԱԿՆ ԳԵՏԸ

Գետնի խորքից,
Սար ու ժայռի
Բազում ճեղքից
Ծնվում է նա՝
Բազմակն
Վարարակնը:

Ավազի հետ
Խաղ է անում.
Ակունքում ջինջ
Նրա ուրախ
Պարն են դիտում
Դաղձ ու եղինջ:

Մի քիչ տրվում
Ծարավ լորին,
Մի քիչ մոռին,
Բաժանում է
Ինքը իրեն
Լուռ՝ բոլորին.
Բաժանելով
Սպառվում է
Ամբողջովին...

## ՇԱՂԻԿԸ

Կանաչ սարի
Մախմուր փեշին,
Մութ ու լուսին
Ծնվեց շաղիկը:

Լուսնից ցոլաց,
Ցրտից դողաց,
Բարուր եղավ
Նրան ծաղիկը:

Քամի ու խոտ,
Ծպուռ, ծղրիդ
Մեղմ երգեցին
«Շաղիկ» տաղիկը:

Նստեց արփին
Ժեռ քարափին,
Շողերի մեջ
Կորավ շաղիկը:

ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

## Ինչի՞ էին սպասում արոսենիները

Գարնան շունչն էր արդեն թևածում անտառում: Ձմեռային ծանր քնից զարթնում էր մեծ, հսկայական անտառը, զարթնում էին դարավոր կաղնիներն ու մատղաշ կեչիները: Պայթում էին ծառերի բողբոջներն իրար ետևից, անծայրածիր կանաչն էր թագավորում անտառում: Իրենց դյութական երգերն էին երգում, գարնան գալուստն ավետում թռչունները: Գարնանային զարթոնքին չէին արձագանքում միայն սովորական արոսենիները: Կանգնած էին լուռ, անբողբոջ ու անծաղիկ:

«Ինչի՞ են սպասում արոսենիները»,— զարմանում էին ծառերը: Իսկ արոսենիները ժպտում էին մտովի՝ սպասելով զարթոնքի իրենց ժամին: Նրանք բնությունից զարմանալի ու հանելուկային մի հատկություն են ստացել՝ կանխագուշակել առաջիկա սեզոնի բնույթը: Եվ եթե տաք ու երկարատև աշուն է սպասվում, արոսենիները սովորականից բավական ուշ են ծաղկում, իսկ եթե նրանց ծաղկումը վաղ է սկսվում ու շուտ ավարտվում, ապա աշունն էլ կարճատև է լինում:

Ահա թե ինչու էին հապաղում արոսենիները:

## Մենավոր ծառը

Անտառը նայում էր հանդիպակաց ժայռի կատարին թառած միայնակ ծառին ու լուռ ծիծաղում. խղճուկ, ինչպե՞ս է պահպանելու իր գոյությունը: Ծառն, իրոք, ողբալի վիճակում էր՝ նախորդ օրվա ուժգին քամին պոկել էր ծառի կատարը, ջարդել ճյուղերը: Միայնակ այդ հալածականը թեև այդպես բզկտված, նոր արմատներ գցելով կրկին վեր էր բարձրացրել սաղարթը:

Իսկ անտառի համար սարսափելի չէին ոչ ուժգին փոթորիկները և ոչ անգամ ուժեղ ջրհեղեղները, այնտեղ թե՛ ծառերը, թե՛ թփերը և թե՛ խոտերը համախմբված, կոտրում էին տարերքի ուժը:

Մենավոր ծառը կառչել էր կյանքից ու չէր հանձնվում: Ճյուղակոտոր, բայց դեռ ապրում էր ժայռի ծայրին:

Եղածը կարծես քիչ էր, սկսված երկարատև շոգերից առանց այն էլ խեղաթյուրված ծառի բունը ոլորվեց դեպի աջ, իսկ շոգերին հաջորդող տևական երաշտից ոլորվեց դեպի ձախ:

Մինչդեռ անտառի ներսում ծառերն այնպես առողջ էին, այնպես սլացիկ ու գեղեցիկ, որովհետև անտառում թե՛ առատ խոնավություն կար, թե՛ պարարտ հող: Բայց անտառն էլ ակամա հարգանքով համակվեց միայնակ ծառի հանդեպ՝ նրա կամքի, նրա ձգտման, նրա կյանքի տենչի հանդեպ: Այդ տարին լավ չէր անգամ անտառի համար, թեև նա այնքան էլ չտուժեց, սակայն ամենատխուրը մենավոր ծառի վիճակն էր, որ ամառ օրով ասես տերևաթափ եղած լիներ, այնպես էին վնասատուները խժռել նրա կանաչ ծածկը:

Անտառն արդեն կուզեր նույնիսկ օգնել նրան, և երբ ուժգին փոթորկի ժամանակ կայծակներն էին փայլատակում, նրա աչքը շարունակ մենավոր ծառի կողմն էր: Ահա, այդպես էլ գիտեր՝ կայծակը խփեց միայնակ ծառին, սակայն կրակը շուտով հանգավ տեղատարափից:

Բայց փոթորիկը չէր հանդարտվում և ուժգին քամին պոկելով ծառը, ժայռի ծայրից ցած շպրտեց: Անտառը շատ զարմացավ, երբ օրեր անց մարդիկ եկան, շրջապատեցին մենավոր ծառը և այնքան ուշադիր դիտում, զննում էին նրան:

Մարդկանց խիստ հետաքրքրեց ծառի ֆանտաստիկ տեսքը: Եվ երբ սղոցեցին ծառի բունը, ուսումնասիրելով բնափայտի կառուցվածքը, նրա տարեկան օղակների դասավորությունը, տեսան, որ այնտեղ նրա ողջ պայքարի պատմությունն է գրված՝ թե ե՞րբ են փոթորիկներ եղել, երբ ուժեղ ու տևական երաշտներ, երբ են առատ տեղումներ ու ջրհեղեղներ եղել ու երբ են մոլեգնել վնասատու միջատներն ու հիվանդությունները:

Ծառն իր տառապալից կենսագրությունն ինքն էր գրել իր բնի վրա:

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՄՏՈՐՈՒՄ

Մի մրջյուն՝ ուժերը լարած,
Տեսա, մի թիթեռ էր տանում.
Ճկել էր ոտքերը բարակ,
Չէր կանգնում, հանգստանում:

Թիթեռին ես շա՜տ խղճացի,
Թեև նա մեռած էր, մեռած:
Մեռած էլ շատ է՜ր գեղեցիկ`
Փոշու մեջ թևերը փռած:

Ես ձեռքս առաջ պարզեցի,
Որ նրան այդ փոշուց հանեմ.
Բայց մրջյունն էլի, ինչպես ձի,
Քաշում էր, որ նրան տաներ:

Կանգ առա... Խղճացի և նրան...
Թիթեռին նա չէր մեռցրել,
Գտել էր խոտերի վրա,
Ուզում էր իր բույնը հասցնել:

Մրջյունը ավազակ հո չէ՞ր.
Նա հալալ քրտինք էր թափում:
Ավազակ, օ, նա կլիներ,
Ով բռնի և կամ թե թաքուն
Թիթեռին խլեր մրջյունից,
Քամուն տար ջանքերը համառ,
Մղված իր ինչ-ինչ մի շահից,
Կամ այնպես, հաճույքի համար:

Մինչ խորհում էի այս մասին,
Իմ կողքով սլացավ մի շուն,
Եվ մրջյուն ու թիթեռ միասին
Չքացան փողոցի փոշում:

... Լինում է և այդպես:
Ի՞նչ արած...
Բայց կյանքը տանում են կրկին
Մրջյունի ոտքերը բարակ,
Թիթեռի թևերը նրբին:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՎԼԱԴԻՄԻՐ ՉԻՍՏՅԱԿՈՎ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# Նամակը

Հենց ճամբար հասանք, անմիջապես նստեցի մորս նամակ գրելու: Ախր մայրիկս շատ է սիրում նամակներ ստանալ և ճանապարհ դնելուց առաջ հատկապես հիշեցրեց.

— Գնա՛, որդի՛ս, նամակ կգրես, լա՞վ:

«Բարև՛, մայրի՛կ,— գրեցի,— մենք հիանալի տեղ հասանք...»

Այդ րոպեին վազեց Օլեգը և գոռաց.

— Գնա՛, ճաշելու ժա՞մն է:

Գնացինք ճաշելու: Իսկ երեկոյան խըմբակների պարապմունքների մասնակցեցինք: Հետո մեզ կինոնկար ցույց տըվին...

Նամակի մասին հիշեցի միայն հինգերորդ օրը: Նստեցի և շարունակեցի՝ «Պարապում եմ սեղանի թենիսի և պարերի խմբակներում: Շուտով մեզ մոտ...».

Երևաց Օլեգը և գոռաց.

— Գնա՞, շու՞տ, հեռուստացույցով նոր մուլտեր են ցույց տալիս:

Վազեցինք մուլտեր նայելու: Մի քանի օր հետո նորից նստեցի նամակիս շարունակությունը գրելու, բայց այլևս չէի հիշում, թե ինչ է լինելու «շուտով մեզ մոտ...»— պարերի մրցու՞յթ, թե՞ այլ մըրցումներ: Էլի երևաց Օլեգը և գոռաց.

— Գնա՛, շու՛տ, հինգերորդ ջոկատի հետ ֆուտբոլ ենք խաղալու, բայց մենք դարպասապահ չունենք:

Մենք խաղը տարանք: Ես լավ խաղացի: Ջոկատավարը անձամբ ինձ շնորհակալություն հայտնեց, նույնիսկ ճամբարի հավաքականի մեջ ինձ ընդգրկեցին որպես պահեստային դարպասապահ...

Մի օր էլ տեսնեմ կողքիս պահարանիկի մեջ մի թուղթ է ընկած. դա իմ նամակն էր մայրիկիս: Նստեցի շարունակելու և ոչ մի կերպ չէի հիշում, թե էլ ի՞նչ պիտի լինի «շուտով մեզ մոտ...» Դեհ, գրեցի. «Ճամբարի հերթափոխի ավարտն է: Ինձ, երևի, շնորհակալագիր կտան՝ կենդանիների նկատմամբ սրտացավ վերաբերմունքիս համար, ախր ես այդ խըմբին էլ եմ մասնակցել...»

Դարձյալ երևաց Օլեգը և գոռաց.

— Գնա՞, գնում ենք խարույկի համար ցախ հավաքելու:

Համա՜ թե խարույկ էր: Բոցը երկինք էր հասնում: Պար, երգ, վիկտորինա: Շնորհակալագիր էլ տվեցին: Տանը ես այն պատից կախեցի:

Երեկոյան մայրիկս աշխատանքից տուն եկավ: Սկսեցի պատմել մեր ճամբարի մասին: Էլի երևաց Օլեգը և գոռաց.

— Գնա՞, ինձ նոր դրոշմանիշե՞ր են բերել, գնանք նայենք:

Մայրիկս ասաց.

— Վերնաշապիկդ հանի՛ր լվանամ:

Երբ վերադարձա Օլեգի մոտից, մայրս տխուր նայեց ինձ ու ասաց.

— Շնորհակալությո՞ւն, որդյա՛կս, հետաքրքիր նամակի համար:

Եվ ինձ մեկնեց ինչ-որ թաց, ճմռթված թղթի կտոր, որ իմ գրպանում էր գտել: Բացեցի և կարդացի.

«Բարև՛, մայրիկ...»

# Երկու ... սիստեմով

Երբ ուսուցիչը բացեց դասամատյանը և հայացքը մաճ ածելով դասարանում, ասաց. «Հիմա դասը կպատասխանի...» դասարանում քար լռություն տիրեց, աշակերտները արագ-արագ սկսեցին թերթել դասագրքերը, հույս ունենալով մեկ ակնթարթում յուրացնել դասագրքում եղածը:

Ոմանք ձեռք բարձրացրին, ոմանք՝ ընդհակառակը, գրասեղանի տակ թաքնըվեցին, աշխատելով ուսուցչի աչքին չընկնել: Իսկ Վասիլի Զույենկոն հանգիստ նստած էր, կարծես նրա համար միևնույն էր կկանչե՞ն իրեն գրատախտակի մոտ, թե՞ ոչ: Հանգիստ է, որովհետև հաստատ գիտի, որ եթե կանչեն, «երկուս» կստանա, չկանչեն՝ չի ստանա:

Բայց ահա ուսուցիչը կանչում է Կովալենկոյին, և բոլորը թեթևացած շունչ են քաշում: Կովալենկոն քիթը կախ մոտենում է գրատախտակին, իսկ Վասիլին պայուսակից հանում է գիրքը, որովհետև հաջորդ դասը հանրահաշիվ է, և սկսում է պատրաստվել... հանրահաշվի դասին նա պատմության դասը կսովորի, պատմության դասին՝ մայրենի գրականություն:

— Ես այդպիսի սիստեմ եմ մշակել,— ընդմիջմանը հպարտ-հպարտ պատմում է նա իր կողքին նստողին:— Ի՞նչ կարիք կա տնային աշխատանքները կատարել և կանոնները անգիր անել: Ես նախորդ դասին բոլորը կհասցնեմ: «Երեք» կնշանակեն, հերիք է, ավելին չեմ էլ ուզում:

Հաջորդ օրը նրանք արդեն երկուսով չպատրաստվեցին դասերին, Վասկայի սիստեմով: Նրանց երկուսին էլ հենց առաջին՝ աշխարհագրության դասին գրատախտակի մոտ կանչեցին և մեկական «երկու» դրեցին: Կես դաս նրանք «լողում էին» Ատլանտյան օվկիանոսում և երկրաչափությունը արտագրել չհասցրին: Հաջորդ դասին նրանց նորից կանչեցին գրատախտակի մոտ... ֆիզիկայի դասին՝ նույնպես...

Մի խոսքով, դասերից հետո տուն տարան մեկական պայուսակ կլորիկ, կարմիր «երկուսներ»: Եվ ոչ թե պատահաբար, այլ... հատուկ մշակած սիստեմով:

**Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ**

ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ

## ԻՐԵՆՑ ԲԱՐԻ ՄԱՅՐԻԿԻ ՊԵՍ

**Ամեն ծաղիկ, ամեն մի թուփ,**
**Երազում է արև պայծառ,**
**Երազում է առվի կարկաչ**
**Ու պարզ երկինք անծայր-անծայր...**
**Երբ սողում է աշնան քամին,**
**Ծաղիկն անխոս ու անշշուկ,**
**Մայրանում է, սերմակալում**
**Եվ սերմերն իր հատիկ-հատիկ**
**Պահ է տալիս նա մայր հողին,**
**Իսկ երազը՝**
**Իր միշտ արթուն ու միշտ անշեջ,**
**Սերմերի մեջ...**
**Որ գարնանը**
**Նրանք ծլեն ու կանաչեն,**
**Ու երազեն**
**Ինչ իմանաս ինչի մասին,**
**Լուռ ու անտես,**
**Իրենց բարի մայրիկի պես...**

## ԱՐԵՎԻ ՆՄԱՆ

**Գարնան արևը ժպտում է մեղմիկ**
**Երկնակամարից,**
**Հայացքով պայծառ ողջագուրվում է**
**Դաշտերին և ինձ...**
**Ես թռչկոտում եմ կանաչ խոտերում**
**Ջովաշունչ գարնան,**
**Ծաղկանց թերթերն եմ ուզում համբուրել**
**Արևի նման...**

## ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

**Թռչունները երջանկավետ**
**Ծառից ծառ են թռչում,**
**Սարի լանջին ձյունիկն է դեռ**
**Արևի հետ վիճում...**
**Իսկ ուռենին նորաբողբոջ**
**Դալար մեջքը ճկել,**
**Կռացել է առվի վրա,**
**Նոր երգեր է լսել...**
**Ոչինչ, ոչինչ, ոչինչ պետք չէ,**
**Այս ամենից բացի,**
**Նորեկ գարնան շունչն եմ զգում**
**Եվ բուրմունքը դաղձի...**

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Բառը շրջագայող ձիավոր է

ԱՄԱԼ
ԱՌԱՍՏԱԿ
ԲՂՈՒՂ
ԾՈՓ
ԿԱՀՈՒՅՐ
ԹԱԿՈՒՅԿ
ՍՏՈՄԱՆ
ՔԱՆԴՈՒԿ
ԴԱՇԽՈՒՐԱՆ
ԿՈՆՔ
ԿԺԱԿԱՐԿԱԺ
ԿՈՎԼԱԿ
ՊԱՏԿԱՆԱԿ
ՀԱԴԱՂԱԿ
ՏԿՃՈՐ

Մեծ լեզվաբան Հրաչյա Աճառյանը գտնում է, որ **աման** բառն առաջացել է **ամալ** արմատից և նշանակում է լցնել: Ամանը հայերենում լայն հասկացություն ունի: **Աման** են կոչվում բազմատեսակ անոթները: Նրանցից յուրաքանչյուրը գործածության իր բնագավառն ունի: Պետք է սովորել և այդ իրերը կոչել իրենց կոնկրետ անուններով և ոչ թե պատահած անոթին աման ասել:

**Առաստակ** է կոչվում գինի խմելու ծորակավոր թասը՝ գավաթը: **Բաժակ** է հեղուկներ խմելու համար օգտագործվող գավաթի կամ ըմպանակի անունը: **Բաժակ** է կոչվում նաև ծաղիկն ամփոփող բաժականման պսակը: Փոխաբերաբար նշանակում է ըմպելիք, խըմիչք, նաև՝ փորձություն, փորձանք: Այս բառից են կազմված **բաժակաճառ** (կենացի առթիվ ասված խոսք), **բաժակակալ** (կանթավոր մետաղյա աման, որի մեջ դնում են բաժակը), **բաժակաման** (բաժակներ պահելու աման) և այլ բառեր:

**Բղուղ** (նաև՝ բղուկ, բղեկ) է կոչվում յուղ, պանիր կամ թթվեղեն դնելու կավե մեծ կճուճը: **Գինաման** են ասում գինու ամանին, **գինեբաժակ**՝ գինու բաժակին, **գինեթաս**՝ գինու թասին, **գինեկարաս**՝ գինու կարասին: **Գինեհան**: Խողովակաձև անոթ է, որով կարասից գինի են հանում համտես անելու համար: **Ծոփը** գինու կարասն է, **կահույքը**՝ սափորը, ջրի կամ գինու ամանը, **թակույկը**՝ ջրի կամ գինու կավե մեծ ամանը, **գավը**՝ երկար վզով ու նեղ բերանով գինու ամանը: **Գավաթ** է կոչվում զանազան խմիչքների համար օգտագործվող բաժակը կամ ըմպանակը: Գավաթ է կոչվում նաև ոսկուց, արծաթից և թանկարժեք այլ նյութերից պատրաստված այն ամանը, որը որպես մրցանակ տրվում է մարզական մրցումներում հաղթողին: **Սափորը** խեցեղեն կամ մետաղյա կժանման աման է տարբեր հեղուկների համար: Այս բառից է բարդված նաև **աճյունասափորը**՝ անոթ կամ սափոր, որի մեջ պահում են հանգուցյալի հրկիզված դիակի մոխիրը: Եկեք այստեղ կանգ առնենք և հիշենք աճյունասափորի հետ կապված երկու սրտառուչ դրվագ:

Աշխարհահռչակ գրող Վիլյամ Սարոյանը ապրում էր Ամերիկայում, ոտի տակ էր տվել ամբողջ աշխարհը, բայց հազար թելով կապված էր Հայաստան աշխարհին: Գրեց անգլերեն, բայց իրեն համարում էր հայ գրող: Այո՛, Սարոյանը մեծ հայրենասեր էր: Հաճախ էր գալիս Հայաստան, ուժ առնում մայր հողից և մեկնում շրջելու աշխարհը: Մահացավ 1981 թվականին: Նա կտակել էր իր աճյունի կեսը թաղել Հայաստանում: Եվ ահա, նրա հրկիզված մարմնի մոխրի կեսը թաղվում է Ֆրեզնո քաղաքում (ԱՄՆ), մյուս կեսը բերվում է Հայաստան: 1982 թվականի մայիսի 29-ին, ժամը 14-ին, Երևանի Կոմիտասի այգու պանթեոնում թաղվում է Վիլյամ

Սարոյանի աճյունասափորը:

Ամերիկյան մեծ նկարիչ, գրող ու հասարակական գործիչ Ռոքուել Քենտը (1882—1971) այցելել է Սովետական Միություն, եղել Հայաստանում, զմայլվել հայկական գեղեցիկ բնությամբ, հայ մարդու՝ հիացք պատճառող աշխատասիրությամբ: Նրան առանձնապես շատ է հմայել Դիլիջանի բնությունը: Իր նկարներից մի քանիսը Քենտը նվիրել է Դիլիջան քաղաքին: Պարտքի տակ չմնալու համար դիլիջանցիները նրան նվիրում են 3 հազար տարեկան կավե հայկական նախշազարդ մի սափոր: Քենտը հայկական հնամենի սափորը իր հետ տանում է Ամերիկա՝ ամենևին չմտածելով, որ այն պիտի դառնա իր աճյունասափորը: Օրերից մի օր Ռոքուել Քենտի տունը հրդեհվում է: Մոխիր է դառնում տան եղած ամեն բան, այդ թվում՝ սքանչելի շատ նկարներ: Բայց հայկական հրով թրծված սափորը մնում է անվնաս: Քենտը դրա մեջ խորհրդանշական բան տեսավ և կտակեց, որ իր աճյունն ամփոփեն այդ սափորում: Նրա կտակը կատարվեց և հայկական սափորը դարձավ Ռոքուել Քենտի աճյունասափորը:

Շարունակենք ամանի մասին մեր խոսքը: Գինի և այլ հեղուկներ պահելու սափորը կոչվում է **ստոման,** ցորեն պահելու համար կավե կարասը՝ **քանդուկ,** լագանը, կոնքը կամ տաշտը՝ **դաշխուրան: Կոնք** է կոչվում գոգավոր մեծ ամանը, լայն, բայց ոչ խոր տաշտը, լագանը: Կոնք է կոչվում նաև մարմնի կոնքագոտին, կմախքի այն մասը, որն իրանը միացնում է ետին վերջավորություններին (կաթնասունների) կամ ստորին վերջույթներին (մարդու): **Կուլան** կավե փոքրիկ կուժն է, **կուժը**՝ նեղ բերանով և լայնափոր մետաղե, փայտե կամ կավե սափորը՝ ջրի համար: **Կժակարկած** է կոչվում մեծ դդումը, որը գործածվում է իբրև գինու աման: Այս բառն օգտագործել է միջնադարի մեծ փիլիսոփա Գրիգոր Պահլավունի Մագիստրոսը: Բառը կազմված է **կուժ-ա-կարկած** բաղադրամասերից: **Կուժն** ու **կարկածը** արմատներ են, ա-ն՝ հոդակապ: **Կարկած** նշանակում է դդում, փոխաբերաբար՝ **գլուխ, գանգ, կառափ:**

**Խեցանոթը**՝ կավից պատրաստված անոթն է, **կովլակը**՝ միակտոր փայտե կանթավոր ջրամանը, որը տարածված էր Երզնկայում, **կարասը**՝ թրծած կավե մեծ ամանը գինու և ուրիշ հեղուկների համար:

**Պուտուկ:** Կճուճ է նեղ բերանով, երկկանթ կավե անոթ է, որի մեջ ճաշ են եփում կամ մթերքներ պահում: **Ըմպանակ** են ասում գինի և այլ հեղուկներ խմելու համար օգտագործվող բաժակին առաջացել է **ումպ, ըմպել** (խմել) արմատից: **Սկահ** է կոչվում մեծ բաժակը, թասը: Կազմված է **սկահակ** (փոքրիկ սկահ, բաժակ, գավաթ) և **սկիհ** (եկեղեցական անոթ՝ գինու արծաթյա թաս) բառերից: **Պատկանակ** է կոչվում հնդընկույզի պատյանից սարքած ըմպանակը: **Տաշտը** փայտե կամ թիթեղյա երկարավուն կամ կլոր ամանն է, որի մեջ խմոր են հունցում, լվացք անում, խաղողի կամ գազպենի քաղցու սարքում և այլն: **Տաշտակ.** փոքր տաշտ, **հադաղակը**՝ գինու փորեղ աման, կաշվե տիկի կամ փայտե ամանի ձևով: **Ծիշ**՝ նեղ վզով, գլանաձև ապակյա հեղուկաման է, սրվակ: **Սրվակ** են ասում ապակյա փոքրիկ անոթին, **փեղամիկ**՝ նեղ բերանով գինու սրվակին, **եղջյուր**՝ եղջյուրե սրվակին, կոտոշին, որով գինի են խմում: **Տափաշիշ**՝ գինու կամ ջրի ըմպանակ, որ օգտագործում են որսորդները, ճանապարհորդները և զորականները: **Տակառը** մետաղե դողերով փայտե գլանաձև անոթ է, որի մեջ գինի, օղի, պանիր, ցորեն, թթվեղեն և ուրիշ բաներ են պահում: Հին Հայաստանում տակառների մեջ միայն գինի էին պահում: Այդ բառից է առաջացել **տակառապետը,** որ նշանակում է մատակարար, մատռվակ: Տակառապետությունը բարձր պաշտոն էր հայկական արքունիքում:

**Տիկ:** Հայերենի հնագույն բառերից է: Սկզբում նշանակել է այծ: Հետո տիկ է կոչվել այծի մորթուց պատրաստված տոպրակը: Այնուհետև ընդհանրապես մորթուց (այծի, ոչխարի, երինջի և այլնի) պատրաստած ամանները կոչվել են տիկ, որի մեջ գինի և ուրիշ հեղուկ են լցնում: Այստեղից է առաջացել հին հայերենում գործածական **տիկ հանել** արտահայտությունը, որ նշանակում է մաշկը հանել՝ տիկ պատրաստել: Հնում դա եղել է պատժամիջոց: 5-րդ դարի պատմիչ Փավստոս Բուզանդը գրում է, թե ինչպես են տիկ հանել հայ քաջարի զորավար Վասակ Մամիկոնյանին:

**Տկճոր** է կոչվում փոքր տիկը: Տկճոր են ասում նաև պարկապզուկին:

**Սպասքը** կենցաղային գործածության պիտույքների ամբողջական համալիրն է: **Կրեճ** է կոչվում քարի փոքրիկ գուռը, կատվի լակի ամանը, նաև՝ կոտրած կարասի կամ կժի տակը, որ օգտագործում են որպես ջրաման:

Վերջում **ամանկոտրուկ** բույսի մասին: Դա վայրի խաշխաշն է, որով, իհարկե, ոչ մի աման էլ չես կարող կոտրել: Այնպես որ նա անտեղի է այդ անունն ստացել: Կյանքում այդպիսի բաներ քիչ չեն լինում: Միշտ չէ, որ անունը պատշաճում է տիրոջը:

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

# ԴԵՊԻ ՄԵՐ ՏՈՒՆ

Առավոտ է։

Անձրևը դադարել է։ Ամպերը հովտի միջից, երևի հովտից ձանձրանալով, բարձրացել են վերև-վերև։ Օդը օշարակի նման հաճելի է։ Փողոցը ժպտում է երկար, իրեն խեղդած մառախուղից ազատվելով։ Թեքվում եմ ձախ՝ դեպի աղմկոտ գետը, որ գիշերը եկած անձրևից բավականին պղտորվել է։

— Է՜յ, պապի՛կ։

Շրջվում եմ ետ։

— Էդտեղ կարմինջ չկա՞։ Կարմինջ չկա՞...

Երեք փոքրիկ տղաներ են։ Փոքրիկ, շատ փոքրիկ։ Երկուսը թուխ ուլիկներ են, մեկը շեկլիկ՝ ցորենի հասկ մազերով։

— Կարմինջը ներքևում է։

Երեքն էլ կանգնել են լավ շինած մի հին քարե տան մոտ, երկու փողոցի անկյունում։ Երեքը միասին՝ կողք-կողքի։

— Դու ու՞մ պապիկն ես։

Սա հարցնում է շեկլիկը, նա, որի մազերը ցորենի հասկերի են նման։ Իսկ աչքերը կապույտ են։ Երեսին պեպենի խալեր կան, կարծես քիչ առաջ հորթ է լիզել։ Փոքրիկ, մի բուռ մարդ է։ Այո՛, մարդ է։ Վրայի բլուզը հազիվ թզենու տերևի չափ է, տրուսիկը ևս, որ կանաչ է։

— Դու ու՞մ պապիկն ես։

— Իսկ քո անունն ի՞նչ է,— հարցնում եմ ես։

— Աշոտիկ։ Ես Փոշոտի Աշոտի թոռնիկն եմ։ Պապիկս ինձ ծանդաք է տալիս։

Ես ափսոսում եմ, որ հետս ծանդաք՝ ծամոն չունեմ։

— Ես էլ Վազգենն եմ,— ասում է մյուսը։— Չորս տարեկան եմ։ Ես Քյորփա Վաղոյի թոռն եմ։

Մի կորած աշխարհ է կենդանանում իմ առաջ։ Քյորփա Վաղոն մանկությանս ընկերն է, Փոշոտի Աշոտը՝ ևս։

— Ես էլ Գարիկն եմ, պապի, Փայլակի տղան,— ասում է երրորդը։

Աշոտիկը՝ շեկլիկը, նրան հրում է։ Հետո ցույց է տալիս մայթի մի պատառիկը։

— Տե՛ս, տե՛ս, պապի՛կ։

Ճանապարհի այդ մասը ասֆալտած չէ։ Հողե հարթ, պնդած պատառիկ է։ Ասացի, որ գիշերն անձրև է եկել, ճանապարհի այդ մասը հղկել, ամրացրել։ Հիմա մի քիչ, շատ քիչ արև է և հողի այդ մասը տաք շնչում է դեղնականչի նրբությամբ։

— Տե՛ս, պապի։

Մի անձրևորդ, որ կավագույն է, թեթև դեղնակարմիր, երևի տաս-տասնմեկ սանտիմետր երկար, մարմինն օղակ-օղակ ձգելով, երկարելով շարժվում է առաջ։ Սուր ծայրը ավելի է սրում, մեջքի սևավուն օղակը կծկում-ձգում և սողում։ Աշոտիկը հարցնում է.

— Էս որդը ո՞ւր է գնում, պապի՛կ։

Անձրևորդի ետևից սպիտակ հետք է մնում։ Լավ սպիտակ, մի եղունգի լայնքով։ Անձրևորդը ճանապարհ ունի գնալու։ Երևի ամեն արարած էս աշխարհում ճանապարհ ունի գնալու։

Վազգենը հարցնում է.

— Էս որդը ո՞ւր է գնում, պապի՛կ։

Գարիկը հարցնում է.

— Էս որդը ո՞ւր է գնում, պապի՛կ։

Ինքս էլ եմ զարմանում՝ իրոք, ո՞ւր է գնում անձրևորդը։ Աշոտիկն ասում է.

— Գնում է իրենց տուն։

Ցնծում եմ։ Պատասխանը գտանք։

Անձրևորդի ճանապարհը երկար է։ Ետևից երևի մի տաս մետր գծվել է նրա սպիտակ հետքը։ Անձրևորդ է, բայց հետք ունի։ Սողում է ու հստակ հետք թողնում։

— Գնում է իրենց տուն։

Աշոտիկը նորից է նայում ինձ։

— Պապի՛, բա որ մեքենա գա կոխ տա որդի՞ն։

— Հասկացա, Աշոտի՛կ,— ասում եմ։— Դու քանի՞ տարեկան ես։

— Երեք։ Մեր փողոցով էնքա՜ն ավտոներ են անց կենում, պապի՛կ։

Ես նստում եմ դարպասի մոտի նստարանին։ Երեքն էլ շրջապատում են ինձ։

— Դու ու՞մ պապիկն ես։

Վազգենը նայում է հեռացող անձրևորդի ետևից։

— Պապի՛կ, էն ո՞ւր է գնում, է՞...

Աշոտիկը հրում է նրան։

— Ասացի՝ գնում է իրենց տուն։

Երեք տղաներն էլ գլխաբաց են։ Մոտիկ կեռասենու վրա սև կտուցով մի թռչնակ է երևում։ Անձրևորդը զգում է նրան՝ այդ թռչնակին, նրա ախորժակը, իսկույն մըտնում է ընկած տերևի տակ։

Մի քիչ հեռվում մի փոքր, շատ փոքր անձրևորդ էլ է երևում։ Սա ևս ետևից, պնդած հողի վրա սպիտակ գիծ է թողնում՝

իր հետքը։ Զարմանում եմ, ինքը բարակ է, դերձան թել, բայց հետքը լայն, համաչափ, սպիտակ ժապավեն։ Ինքը կարմիր է, հետքը սպիտակ։ Ինչի՞ց է, որ կարմրի հետքը սպիտակ է լինում։ Եվ ինչի՞ց է, որ անձրևորդը հետք է թողնում՝ երկար, սպիտակ հետք։

Ամեն ինչ այս աշխարհում իր հետքն ունի, հետք է թողնում։

Աշոտիկը քար է գցում դեպի ծառը և

— Դու էլ հինգ, հա՞։

Չի պատասխանում։ Հարցնում է.

— Պապի՛կ, դու ծիծաղել գիտե՞ս։

Աշոտիկը մի կողմ է քաշում նրան, ինքը կանգնում առաջ։

— Պապի՜կ, դու կարո՞ւմ ես ծիծաղես։

Ես վեր եմ կենում։ Աշոտիկը հետևիցս գոչում է։

— Պապի՜կ։ Էլի՛ եկ։ Էգուց կգաս ժամը



ՆԿ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

թռչնակը փախչում է։ Աշոտիկն ասում է.

— Եկել էր, որ որդին ուտի։

Վազգենը, որ Քյորփա Վաղոյի թոռն է, ասում է.

— Պապի՛կ, ես ութսուն տարեկան եմ։

— Չէ, հա՞,— ասում եմ։— Դպրո՞ց ես գնում։

— Չէ։ Մեծ եղբայրս է գնում, նա յոթ տարեկան է։

երկուսին։ Մենք էստեղ կլինենք։ Լա՞վ։ Որ գաս, ծանդաք կբերես։ Լա՞վ։ Ծանդաք կբերես։

Գնացի։ Զգացվող, թրթռացող հետք մնաց իմ մեջ՝ սպիտակ, անմեղ մանկությանըս հետքը, որ հենց այստեղ գտա։ Ինձ թվաց, թե ես էլ Աշոտիկի տարիքին եմ և ահա, ինչ-որ հետք թողնելով՝ գնում եմ։ Ու՞ր։ Մեր տուն։

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ



# ՀԵՐԱԿԼԵՍԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՍԽՐԱՆՔԸ

Հերակլեսը նավակից վերցրեց իր վիթխարի գուրզը, ծանրածանր սուրն ու գնաց:

Հերակլեսը քայլում էր մեռելային լռության մեջ: Այստեղ դժոխքն էր, չորս կողմ հանգուցյալների անմարմին ստվերներն էին թեթև ամպերի պես լողում նրա շուրջը: Ստվերները երբեմն անցնում էին այնքան մոտիկ, որ մշտընջենական թախիծով լեցուն նրանց հայացքները առնում էին խավարի այս թագավորության միակ կենդանի մարդու հայացքին, և այդ հայացքներում այնքան աղերս կար: Չէ՞ որ Հերակլեսը հայտնվել էր այստեղ մեռյալներից մեկի ոգին կյանք վերադարձնելու, յուրաքանչյուրը ցանկանում էր, որ ինքը լինի այդ մեկը... Այդ ի՜նչ անմարդկային աղերս էր, ի՜նչ ահավոր է ապրելու ու չապրելու տարբերությունը:

Հերակլեսը կրկին անգամ տեսավ Սիզիփոսին, որ լանջն ի վեր քար էր գլորում, հասցընում գագաթ և քարը կրկին գլորվում էր ստորոտ. նա նորից վերսկսում էր բարձրացնել, այդպես մի ամբողջ հավիտենականություն: Տանտալոսին տեսավ, որ մինչ շրթները կանգնած էր ջրի մեջ ու ծարավ էր: Երբ ցանկանում էր մի կում ջուր առնել, կռանալու հետ ջուրը սկսում էր իջնել, հասնում էր ծընկներին, ապա մինչև գետնին, իսպառ ցամաքում, ապա ուղղվելու հետ կրկին հասնում էր մինչև պապակ շրթերը: Ահավոր տանջանք էր դա, որ պիտի շարունակվեր հավետ: Նրա գլխավերևում հասուն մրգեր էին, երբ ձեռքը բարձրացնում էր մի պտուղ պոկելու ու անսահման քաղցը հագեցնելու՝ ճղները ելնում էին վեր և նրա ձեռքը չէր հասնում: Մի տեղ Դանայոսի հիսուն դստրերը դույլերով ջուր էին լցնում անտակ կարասի մեջ և նրանք էլ այդպես էին պատժվում իրենց չարագործությունների համար: Հերակլեսը տեսավ սոսկումներով լեցուն դժոխքի բոլոր մյուս բնակիչներին, որոնց կերպարն ստեղծել էր մարդկության ուսուցիչների ուսուցիչ հին հույների խորիմաստ ու բանաստեղծական երևակայությունը:

Վերջապես նա հասավ Հադեսի դռներին և այստեղ հանդիպեց մահվան տիրակալի կնոջը, Պերսեփոնային, որը հենց տեսավ Հերակլեսին՝ միանգամից վրա տվեց.

Սկիզբը՝ № № 5, 6, 7-ում:

— Նորից հայտնվեցի՞ր դու, մահկանացուներից ամենաատելին: Չքվի՛ր, գնա՛ այստեղից, չերևաս:

— Ո՞վ կին,— ասաց հերոսը,— ես քեզ հետ գործ չունեմ, կանչի՛ր խնդրեմ ամուսնուդ:

— Սրա՞ն տեսեք,— ձայնը չէր կտրում Պերսեփոնան,— երեկ մեկ, այսօր երկու, մաքուր ջրաղացի ճանապարհ է սարքել որտեղի՞ց է այս լիրբը, այս անառակը: Գնա՛, չքվի՛ր մինչև շնիկը չբերես, չերևաս աչքիս, ոչնչի չես հասնի, գիտեմ ինչի ես հայտնվել... Այս տեսակ էլ աներես ժողովուրդ, ուր ասես իրենց հունական քիթը խոթում են:

Այնպիսի կատաղությամբ էր նա ճչում, ձեռքերը շարժում , որ Հերակլեսը ընկրկելով, մըտածեց.— Էլ ինչի՞ է պետք դժոխքին Քերբեր շունը, եթե Թանաթոսն այսպիսի կին ունի:

Ձայնի վրա դուրս եկավ Թանաթոսն ինքը, գիշերվա պես սև թիկնոցով, մի ձեռքին մահվան անփայլ սուրը, մյուսին հանգած ջահը, իսկ աչքերի մութ խորշերն ավելի խավար էին թվում, քան դժոխքի գիշերն էր: Քարանձավային մի սառնություն փչեց Հերակլեսի վրա:

Նայելով հերոսի զենքերին, որով նա եկել էր մահվան դեմ մաքառելու, Թանաթոսը ժըպտաց: Հերակլեսը նույնպես ժպտաց, նա չէր կարող ժպիտին ժպիտով չպատասխանել, թեկուզ ժպտացողը մահն ինքն էր:

— Օ՛, հզոր տիրակալդ Հադեսի, բոլոր մահկանացուների օրերի հաշվառքը դու գիտես,— Հերակլեսը սովոր չէր վերամբարձ ոճերին, ուստի խոսքը կարճելով, միանգամից ասաց այն, ինչի համար եկել էր.

— Ե՛տ տուր իմ ընկեր ու բարեկամ Ադմետոսի կնոջ ոգին, միևնույնն է, մենք՝ բոլոր մահկանացուներս, վաղ թե ուշ քոնն ենք կրկին:

— Դատելով քո ահեղ զենքերից, Հերակլե՛ս, դու եկել ես ոչ թե խնդրելու, այլ կռվով տանելու քո ուզածը:

— Եթե բանը հասավ կռվին, թող կռիվ լինի: Քանի անգամ եմ ես դեմառդեմ տեսել քո դեմքը, ե՞րբ եմ ընկրկել, որ հիմա ետ կանգնեմ իմ վճռից:

— Բայց դու հիմա եկել ես հենց մահվան դեմ: Ո՞րն է քո զենքը, ինչի՞ն ես ապավինել, ցնորամի՛տ, ինչո՞վ ես մաքառելու մահվան դեմ:

— Իմ անհատնում ուժո՛վ, Թանաթո՛ս: Աստվածները բոլոր ժամանակների բոլոր մահկանացուներից ամենահզորն են ինձ ստեղծել:

— Քո ուժը իր սկիզբն է առնում քո առողջության ակունքներից, ես այնտեղ կնետեմ մահկանացուներին տկարացնող բազմաթիվ հիվանդություններից մեկը և դու ուժ անգամ չես ունենա անդամներդ շարժելու: Ուզու՞մ ես տեսնել, տե՛ս:

Հերակլեսը հանկարծ զգաց, որ ձեռքերը գուրզը չեն պահում, գուրզն ընկավ, ապա ծնկները սկսեցին ծալվել, մարմնի մեջ անասելի ցավ էր մտել, ցնցվում էր դողահար, գետնից մի քարաբեկոր անգամ անկարող էր բարձրացնել:

Թանաթոսը ձեռքի մի շարժումով նրանից հանեց հիվանդությունը, Հերակլեսը ուղղվեց, գետնից կրկին առավ իր ահռելի գուրզը, կանգնեց:

— Մահը մարդու մեջ ապրում է նրա ծնված օրից և նա է սահմանում մարդու օրերի թիվը: Ես եմ ժամանակի տիրակալը, ես եմ մատի մի շարժումով մի կողմ տանում բոլոր օրերդ իսպառ և դու դառնում ես տկար ու անուժ մի ծերունի: Եթե ուզում ես տեսնել քո ծերությունը, տե՛ս:

Իրոք, Հերակլեսը վայրկենապես ծերացավ, թոշնեցին ու կախ ընկան նրա հզորազոր մկանները և կորացան այն ուսերը, որ ի զորու էին երկնակամարը պահելու, կրծքին կախվեց զառամյալ միրուքը և նորից նրա ձեռքից ընկավ գուրզը:

Թանաթոսը խնդաց, մատի մի շարժումով վերադարձրեց նրա պատանեկությունը, ուժն ու կորովը:

— Բայց ես դարձյալ պատրաստ եմ մաքառելու քո դեմ, ոչ ծերությամբ, ոչ հիվանդություններով ինձ չես ահաբեկի,— ասաց նա:— Ես Հերակլեսն եմ:

— Ուրեմն, ահա պայմանը, Հերակլե՛ս: Եթե ինձ հաղթես, դու այստեղից կտանես Ալքեստիդեին,— ասաց Թանաթոսը:— Իսկ եթե պարտվես, քո ոգին էլ առմիշտ կմնա այստեղ:

— Համաձայն եմ,— ասաց Հերակլեսը և սաստիկ ուժով իսկույն էլ հարձակվեց Թանաթոսի վրա ու ահռելի գուրզը իջեցրեց նրա գլխին:

Գուրզը գնաց և բախվեց ապառաժ ժայռին, դղրդաց երկիրը, ցնցվեց դժոխքը, ոգիները սոսկումով աղաղակեցին ու վազան դեպի ընդերքի ամենահեռու խորխորատները: Հերակլեսը կրկին վրա բերեց գուրզը, էլ ավելի սաստիկ հարվածով, նորից դղրդաց, ցնցվեց երկիրը, մարդիկ վերևում կարծեցին երկրաշարժ է, այնտեղ շենքեր փլվեցին, կամուրջները ճաք տվին, Ադմետոսի տանը խնջույքի նստածները հասկացան, որ Հերակլեսն է մաքառում երկրի ընդերքում:

Հերակլեսը զգում էր, որ գուրզը գնում և անցնում է անմարմին, անհյութ, բայց տեսանելի հակառակորդի միջով և նրան ոչինչ վնաս չի հասցնում: Նա առավ իր ծանրածանր սուրը, որի մի հարվածով նա հսկա կաղնի ծառեր էր հատում այնպես, որ թուրն անցնելուց հետո ծառը մնում էր իր բնին կանգնած, ապա սկսում էր դողահար թեքվել ու երբ տապալվում էր գետնին, գագաթն իր արմատից այնքան հեռու էր ընկնում, որ ապշեցնում էր ծառի իսկական բարձրությունը:

Սակայն սուրը ևս անցնում էր դատարկ և ժայռերին առնելով՝ պանրի պես կտրում ցած էր թափում հսկա բեկորներ: Քրտինքն առվակներով հոսում էր նրա լանջով, այլևս հազիվ էր շարժում սուրը: Ապա սուրը մի կողմ նետելով, վրա ընկավ, որ խեղդամահ անեն իր թշնամուն, ինչպես խեղդամահ էր արել անպարտելի Անթեոսին, նրան բազուկների վրա օդի մեջ պահելով:

Սակայն ու՞մ բռներ, ոչինչ չկար, ձեռքերը գնում էին դատարկ ու սեփական ուսերն էին գրկում: Այլևս այնքան էր ուժասպառ, որ կանգնած մնալ չէր կարող, ծնկի գալով ձեռքերով հենվեց գետնին: Այդպիսի բան Հերակլեսի հետ չէր կատարվել երբեք:

— Իմ ուժն առ ոչինչ է քո ուժի դեմ, անիծվա՞ծ մահ,— ասաց նա գլուխը խոնարհելով:

— Անցյալի, ներկայի և գալիքի բոլոր ժամանակների ամենահզոր մարդը անուժ է իմ դեմ,— ասաց Թանաթոսը:— Բայց դու մի հնարավորություն ևս ունես:

— Մի՞թե չի հատել իմ ուժն իսպառ: Ասա՛, ես պատրաստ եմ:

— Քո ցանկությունը կկատարվի, եթե համաձայնես կյանքդ կամովին զոհաբերել ուրիշի համար, Հերակլե՛ս:

Հերակլեսը խորհեց, ասաց.

— Ես համաձայն եմ հօժարակամ կյանքս զոհաբերել իմ սիրելի ընկերոջ և բարեկամ Ադմետոսի համար, նրա երջանկության համար: — Առանց տեղից բարձրանալու, նա ծանրորեն գլուխը խոնարհեց, ասաց.— Ես պատրաստ եմ:

Եվ մահը տեսավ, որ նա իրոք պատրաստ է:

— Հերակլե՛ս,— ասաց նա,— դու հաղթեցիր:

Հերակլեսը չհասկացավ, նա սպասում էր, որ հիմա խավարը կպատի աչքերը և կհանգչի իր կյանքի վերջին օրն այստեղ:

— Ինչպե՞ս,— թույլ, հազիվ ձայն հանեց նա:

— Դու պարտվեցիր որպես հերոս, բայց հաղթեցիր որպես մարդ: Վեր կաց ու տար Ալքեստիդեին, այդպես էր մեր պայմանը: Ես չեմ կարող առնել քո կյանքը, որովհետև երկրի երեսին է Քերբեր շունը. միայն դու կարող ես նրան ետ բերել: Գնա՛ ու բե՛ր:

Հերակլեսը Քարոնի մոտ հասավ չորեքթաթ: Նավ բարձրանալիս ծեր նավավարը օգնեց նրան, մարդկանցից ամենահզորը ուժ չուներ անգամ սեփական ոտքը բարձրացնելու:

Երբ այլևս սահում էին Ստիքսի մռայլ ջրերի վրայով, Հերակլեսը նկատեց, որ նավի ցռուկին, մշուշանման շղարշով պատած, նստած է կանացի մի կերպարանք. հասկացավ ով է դա:

Սակայն կատարվածից նա գլուխ չէր հանում:

— Դա իմ պարտությունն էր, Քարո՛ն— ասաց նա:— Նա պիտի ինձնից կորզեր իմ ոգին, բայց փոխարենը ահա ես տանում եմ Ալքեստիդեին:

— Դա քո մեծագույն սխրանքն էր, Հերակլես,— ասաց ծեր նավավարը:

— Ես անուժ, անօգնական ընկած էի ու չէի կարողանում անգամ գետնից ինքս ինձ բարձրացնել, նորածնի պես անզոր էի ես:

— Սակայն քո մեջ կար հոգու ուժը, որ շատ ավելի հզոր է, քան մարմնականը. դու դրանով հաղթեցիր: Մահը կարող է տկարացնել մարմնականը հիվանդություններով, ծերության անզորությամբ, դու դա տեսար: Սակայն մահվան սարսափից քո հոգին չսառըրեց, չընկրկեցիր դու, վերջին պահին, երբ ընկած էիր անօգնական մանկան պես, հոգին մնաց անպարտելի: Ինչո՞վ նա տկարացներ քեզ, Հերակլես, Մահն իշխանություն չունի այդ անհասկանալի, աներկյուղ մարդկային հոգու վրա: Սակայն դրա համար Հերակլես լինել պետք չէր, մի տկար կին արդեն կատարել էր նույնը... Ահա ինչու ամենամարդկային քո սխրանքը սխրանք չի համարվելու, թվարկվելու են բոլոր տասներկու քո սխրագործությունները և սա չի հիշատակվելու: Էլ ի՞նչ սխրանք, եթե ամեն մարդ կարող է նույնը կատարել: Սակայն հոգու անպարտելի ուժն այն ուժն է, որին ապավինած մարդկությունը կնվաճի ողջ բնությունը, անգամ անկենդան տարածությունները, մեռյալ աշխարհները կբնակեցնի և կիմաստավորի իր բանականության լույսով:

— Դա իմ պարտությունն էր,— Հերակլեսը չէր կարողանում մոռանալ,— այլապես ես ոչինչ չեմ հասկանում: Ես ինքս կամովին ընդունեցի իմ պարտությունը և պատրաստ էի մեռ-

նելու։

Որոշ ժամանակ Քարոնը լուռ թիավարում էր, ապա ասաց.

— Իր բոլոր հնարավորությունները սպառելով, երբեմն մարդը պարտվելով է, որ հաղթանակ է տանում, եթե պարտվելու սահմանը մահն է։ Նա իր մահվան գնով է հաղթում, որ կարելի է, այո, նաև պարտություն համարել։ Եվ հակառակը, հաղթանակ կա, որ իրականում պարտություն է։ Հաղթողին չեն դատում, նրան արձան են կանգնեցնում, գործը մեծարում։ Բայց գալիս է ժամանակը և մարդիկ սկսում են կործանել այդ արձանները, և նրա հաղթանակից պատմությանը մնում է մի ողորմելի, անպատիվ անուն և դարերով նզովում են նրա հաղթանակը, հաղթանակ, որ միայն իրեն է երջանկություն ու հռչակ բերել։ Եվ ապա պարզվում է, որ հաղթել են նրանք, որոնք այդ պայքարում պարտվելով՝ զոհաբերել են իրենց կյանքը։ Դա նրանց ոգու հաղթանակն է։

Հրաժեշտից առաջ Քարոնն ասաց.

— Գնա՛, Հերակլե՛ս, քեզ բարի ճանապարհ, տա՛ր Ալքեստիդեին։ Բայց վերադարձրու՛ Քերբերին, մահվան մեր կացարանն առանց նրա կորցրել է իր մռայլ գեղեցկությունը... Եվ իմացի՛ր, մարդը մահկանացու է, իսկ մարդկությունն՝ անմահ, քանի մարդը ընդունակ է այն սխրանքին, որ նախ այս կինը կատարեց և ապա՝ դու։ Եվ քանի կա մարդկությունը, կլինենք նաև մենք՝ նրա բանաստեղծական երևակայության ծնունդը։ Ահա իրար հետ խոսում ենք որպես կենդանի ապրող, իրական էակներ։ Մի՞թե դա հրաշալի չէ, Հերակլե՛ս...

Հերակլեսն Ալքեստիդեի ձեռքը բռնած վերադարձավ այն պահին, երբ խնջույքի սրահում նրա ընկերները գլուխները սեղանին հակած ողբում էին նրա կորուստը։ Ու հանկարծ տեսան Հերակլեսին։ Անհավատալի էր, բայց նրա հետ էր նաև Ալքեստիդեն, շղարշը ծածկում էր նրան, բայց դա նա էր։

Հիրավի անսովոր, զարմանահրաշ օրեր էին Փերե քաղաքի համար, Հերակլեսի այցը տակնուվրա էր արել քաղաքի կյանքը։ Տներից բոլորը դուրս էին թափվել, փողոցներում, կտուրներին կանգնելու տեղ չկար, բայց չնայած բազմամարդությանը՝ քար լռություն էր, բոլորը շունչները պահած դիտում էին այս ամենազարմանալին, մահից կյանք վերադարձող մարդու հայտնությունը, և ամեն մեկը հոգու խորքերում խորհում էր այն առեղծվածի ու նրա ելքի մասին, որ կարող է երբևէ լինել կյանքի ու մահվան հավիտենական պայքարում։



Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆ

# Այգում թաղված ոսկին

(ժողովրդական)

Մի աշխատասեր գյուղացի կար, ուներ մի լավ, փարթամ այգի, որ մշակում էր իր ձեռքերով ու քրտինքով և առատ բերք ու բարիք ստանում:

Գյուղացին ուներ նաև երեք տղա, ի՜նչ տղաներ՝ բոյով-բուսով, լայնաթիկունք, ամեն մեկը՝ մի աժդահա:

Բայց, արի տես, որ այս տղաները իրենց հոր աշխատասիրությունը չէին ժառանգել: Ծույլ էին, բան ու գործից փախչող:

Օրերից մի օր գյուղացին ընկավ անկողին, կանչեց տղաներին, նստեցրեց շուրջը:

— Տղե՛րք ջան,— ասաց,— մեր այգում, ծառի բնից կես մետր հեռու, երկու բահաբերան խորության վրա մի մեծ կճուճ ոսկի եմ թաղել, կհանեք ու հավասար կբաժանեք, չորրորդ մասը թող հասնի նրան, ում հետ պառավս կապրի:

— Ո՞ր ծառի մոտ է, ա՛ հեր,— հարցնում է ավագ որդին:

Հայրը շունչը փչում է ու չի հասցնում ասել, թե ոսկին որ ծառի մոտ է թաղված:

Եղբայրները անհամբեր սպասում են գարնան գալուն: «Ոսկին կհանենք, ամեն մեկս մեր բաժինը կառնենք, տունուտեղ կդնենք ու մինչև կյանքներիս վերջը փառավոր կապրենք»,— մտածում են նրանք ու հաշվում օրերը:

Գարունը բացվում է, հողից տաք գոլորշին թոնրի ծխի նման քուլա-քուլա ելնում է վեր, ձուլվում թափառող ամպերին: Եղբայրները բահ ու քլունգ են առնում, մտնում այգի: Ի՞նչ անեն. մոլորվում են. ծառերը՝ շատ, հողը՝ ընդարձակ, ո՞ր ծառի մոտ փնտրեն, որտե՞ղ փորեն, որպեսզի ոսկու կճուճը գտնեն:

Թները քշտում, մեկիկ-մեկիկ փորում են ծառերի շուրջը, քրտինքի մեջ շաղախվում, քրտինքը խառնում սև, գլուլ-գլուլ հողին: Հողը աղում-մաղում են, ոսկու հետք չկա: Ամբողջ այգին սև ցել է դառնում: Ի՞նչ անեն, մտածում են եղբայրները, ոսկին որտե՞ղ կլինի:

— Ոսկին չգտանք, բայց փորած, պատրաստ հող է, գոնե մի բան ցանենք, մեր չարչարանքի հախը հանենք,— մտածում են նրանք:

Գարի, կարտոֆիլ ու լոբի, զանազան բանջարեղեն ու կանաչեղեն են ցանում և



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ողջ ամառը օգտվում բերք ու բարիքից: Իսկ աշնանը կարտոֆիլը, լոբին ու կաղամբն են ժողովում, մի մասը թողնում են ձմռանը՝ իրենց ուտելու համար, մի մասը՝ վաճառում:

Ուշ աշնանը ավագ եղբորը ամուսնացնում, մի սիրուն-շարմաղ հարս են բերում տուն:

Ձմեռը փռում է թևերը: Այգին նորից ծածկվում է ձյան ճերմակ սավանով: Գետինը սառչում, ամրանում է: Եղբայրները անհամբեր սպասում են գարնան գա-



լուն, որպեսզի նորից հողը փորեն, ոսկու կճուճը հանեն:

Երկրորդ գարունն է բացվում: Եղբայրները բահ ու քլունգ են առնում, եռանդով քանդում հողը, քրտինքը խառնում հողին, փորում-փորփրում են գետինը, աղում-մաղում են գլուլ-գլուլ հողը, ոսկին չկա ու չկա:

— Փորած, պատրաստ հող է, էլի ցանենք,— առաջարկում է ավագ եղբայրը:

Միջնեկն ու կրտսերը հավանություն են տալիս:

Եղբայրները նորից տարբեր-տարբեր բաներ են ցանում: Բույսերն ավելի փարթամորեն են աճում, ծառերն ավելի են զվարթանում, առատ պտղավորվում, բերքի տակ ճյուղակոտոր լինում:

Եղբայրները ամռանն ու աշնանը նորից առատ բերք ու բարիք են ամբարում: Այդ աշնանն էլ միջնեկ եղբորն են ամուսնացնում, մի արմաղ-շարմաղ հարս են բերում տուն: Թե առաջ մի արև կար տանը, հիմա՝ երկուսը: Երկու հարս, երկու արև: Երկուսն էլ սիրուն ու համեստ, տնարար ու մաքրասեր, իրար հետ էլ՝ ինչպես մի մորից ծնված քույրեր:

Երրորդ գարունն է բացվում: Հողից տաք գոլորշի է բարձրանում ու քուլա-քուլա ելնում վեր, ձուլվում թափառող՝ ամպերին: Եղբայրները երրորդ անգամ բահ ու քլունգ են առնում, մտնում այգի: Կռիվ են տալիս հողի հետ, փորում, փորփրում են այգին, աղում-մաղում են գլուլ-գլուլ հողը, ոչ ոսկի կա, ոչ՝ կճուճ:

Գյուղում մի տարեց, խելոք մարդ է լինում, իրենց հոր վաղեմի ընկերն ու հեռավոր բարեկամը: Եղբայրները որոշում են գաղտնիքը վստահել նրան, խնդրել, որ մի խորհուրդ տա:

Մարդը ուշադիր լսում է նրանց, աչք ածում այգին ծայրից ծայր, գլուխը տըմբտըմբացնում.

— Տղերք, դուք ոսկին արդեն գտել եք,— ասում է ծերունին:

Եղբայրները կասկածանքով իրար են նայում: Չլինի՞ իրենցից մեկը մյուսներից գաղտնի գտել ու տիրացել է ոսկուն: Ծերունին փարատում է նրանց կասկածները.

— Ես հիշում եմ ձեր այգին, ձեր հոր ողջ ու առողջ ժամանակ, և հետո, երբ նա տկարացավ ու այգին էլ իր հետ տկարացավ: Եվ հիմա էլ նայում եմ ու աչքերիս չեմ հավատում՝ այգի չէ, իսկը դրախտ, ինչպես ձեր հոր ողջ ու առողջ ժամանակ էր: Հողը լավ փորած-փխրեցված է, ծառերը՝ էտված, ձևավորված: Ա՜յ, ոսկին ձեր դրախտ այգին է, երեք տարվա ընթացքում ձեր հավաքած բերքն ու բարիքը: Ոսկին ձեր հալալ քրտինքն է, որ հողին եք խառնել, ու հողը լիուլի վարձատրել է ձեզ: Ձեր հորը ես լավ եմ ճանաչում, նա ոչ ոսկի է ունեցել, ոչ էլ պահել է, այդպես է ասել, որ աշխատանքը սիրեք, հողը մշակեք, ծառերը խնամեք: Ոսկին ձեր ձեռքերն են, որ հողից ոսկի են քամում:

ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՀԱԿՅԱՆ

# ԱՅԴ ԶԱՐՄԱՆԱԼԻ ԽՈՐԵՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ

Իրոք՝ Խորենը զարմանալի ֆուտբոլիստ է։

Անցյալ տարի, երբ մի հոդված գրեցի («Ոգնի»—«Արարատ» 18։0), խմբագրությունն ստացավ հազարավոր նամակներ, որոնց հեղինակները միաձայն ասում էին. «Եթե Խորենը հեռանա թիմից, մենք այլևս ֆուտբոլ չենք նայի...» Ստացվում է, որ շատերը ստադիոն են գնում կամ հեռուստացույց դիտում Խորենին նայելու համար։ Այդպես էլ՝ շատերը թատրոն, կինոթատրոն կամ համերգասրահ են գնում՝ սիրած արտիստի համար։

Իսկ մի՞թե պակաս արտիստիկ է Խորեն Հովհաննիսյանը։

Երբ նա խփեց իր 100—101-րդ գոլերը (այժմ խփել է ավելին), կենտրոնական թերթերից մեկը գրեց. «Խորեն Հովհաննիսյանի խաղը իսկական բավականություն է պատճառում։ Նա խփում է ցանկացած ճաշակի գոլեր, միաժամանակ խաղընկերների համար ստեղծում գոլային գերազանց իրադրություններ։ Խորենն այն ֆուտբոլիստներից է ,որոնց խաղին հանդիսատեսը գնում է»։

Հայկական ֆուտբոլում ամենաշատ գոլերը խփել է նա։ Նա առաջին հայ ֆուտբոլիստն է, որ միշտ հանդես գալով «Արարատի» կազմում (արդեն 9 տարի), դարձավ Ֆեդոտովի ակումբի անդամ։

Այսօր մեր հայրենակիցը համարվում է ֆուտբոլի սովետական հավաքականի լավագույն խաղացողներից մեկը։

Քիչ է պատահում, որ որևէ ֆուտբոլիստ մրցակցի դաշտում մեկ խաղում խփի չորս գնդակ։ Այդպիսի բան արեց Խորենն անցյալ տարի՝ Քիշնևի «Նիստրու»-ի խաղում։ «Իզվեստիա» թերթն այդ օրերին սրամիտ վերնագրեց իր հոդվածը. «Հովհաննիսյան—Նիստրու, 4։0»։

Գոլային պահի զարմանալի զգացողությունը, մինչև վերջ պայքարելու զարմանալի ուժը, խաղընկերներին գնդակներ փոխանցելը, զարմանալի դիպուկ հարվածները դարձրել են ֆուտբոլասերների կուռքը։ Այո, Խորենը բազմազան և հետաքրքիր գոլեր է խփում, թեև մեկ-երկու մրցակից նրան մշտապես հսկում են դաշտում, չեն թողնում ազատ խաղա...

Ես նրան հիշում եմ դեռևս 1973 թվից, երբ խաղում էր «Արարատի» փոխարինողների կազմում։ 18 տարեկան էր, արագաշարժ, ճարպիկ, աշխատասեր։ Այդ աշխատասիրությունն էլ նրան դարձրեց վարպետ ֆուտբոլիստ։

Այսօր ավելի է աշխատում։

— Ծնվել է մարզիչների ընտանիքում։ Հայրը ծանրամարտիկ է, մայրը՝ մարմնամարզուհի, եղբայրները՝ ծանրամարտիկ, մարզիչ։ Խորենը մանկությունից հարպուրվել է... չմշկասահքով և ֆուտբոլով։ Սովորել է Երևանի 118-րդ, ապա 181-րդ դպրոցներում։ Ավարտել է պատանի ֆուտբոլիստների մարզադպրոցը։ Մասնակցել է «Կաշվե գնդակ» պատանեկան մրցումներին, խաղացել Գուցանի, Գազանի, Դարասելիայի, նույնիսկ... հոկեյի անվանի դարպասապահ Տրետյակի հետ, որն այդ ժամանակ պատանի ֆուտբոլիստ էր։ Այնուհետև հրավիրվել է ՍՍՀՄ պատանեկան հավաքական, իսկ «Արարատի» հիմնական կազմում առաջին անգամ հանդես է եկել 1975 թվականին՝ հանրահայտ «Բավարիայի» դեմ։ Առաջին գոլը խփել է նույն թվի հունիսի 10-ին՝ «Չախտյորին»։

Խորենի համեստությունը ձևական չէ։ Մի անգամ մեր տան պատշգամբից նայում էինք հանրապետական ստադիոնին, ուր մրցում էին ուսանող ֆուտբոլիստները։ Լարված հետաքրքրությամբ նայեցնայեց ու ասաց. «Ազնիվ խոսք, մեզնից լավ են խաղում»...

Մեկ-երկու անգամ մասնակցել եմ արարատցիների մարզումներին, նույնիսկ գոլ եմ խփել դարպասապահ Վասիլևին։



Այդ տեսնելով Խորենն ասաց.

— Է՛, ընկեր Սահակյան, եթե դուք էլ եք գոլ խփում Վասիլևին, ֆուտբոլիստները կխփեն ու կխփեն...

Հետո մոտենալով դարպասապահին ասաց.

— Առհասարակ՝ Վասիլևի բաց թողած գնդակների թվով կարելի է որոշել, թե քանի հարված է եղել մեր դարպասին...

Կատակն այնքան սրամիտ էր, որ նույնիսկ Վասիլևը ծիծաղեց:

Խորեն Հովհաննիսյանը հատկապես մտերիմ է Յուրի Վարդանյանի, Լևոն Իշտոյանի, Դավիթ Համբարձումյանի և Աշոտ Ղազարյանի հետ: Մի օր եկան մեր տուն. «Գնում ենք 149-րդ դպրոց՝ հանդիպման, մեզ հետ եկեք»: Պարզվեց, որ Համբարձումյանի աղջիկն այդ դպրոցում է սովորում, Դավիթն էլ դպրոցի ծնողկոմիտեի նախագահն է: Ջերմ հանդիպում էր, բոլորս ելույթ ունեցանք, բայց ամենից շատ Խորենի ելույթը մնաց հիշողության մեջ:

— Սիրելի երեխաներ,— ասաց նա,— մի շատ կարևոր և նոր բան եմ ուզում ասել ձեզ, չգիտեմ ինչպես ձևակերպել: Գիտե՞ք, դուք շատ եք, ուսուցիչները՝ քիչ, ուստի երկար եմ մտածել, թե ինչպես ձևակերպեմ այն շատ կարևոր միտքը, որ ուզում եմ ասել: Ուշադիր լսեցեք, թե ինչ եմ ասելու...

Երեխաները քար լռությամբ սպասում էին, թե ինչ կարևոր և նոր բան է ասելու իրենց սիրելի Խորեն Հովհաննիսյանը: Իսկ նա երկար ու երկար նախաբան էր ասում և ի վերջո բացատրեց ասելիքը.

— Սիրելի՛ երեխաներ, գիտե՞ք, թե ինչ եմ ուզում ասել:

— Ի՞նչ,— միաձայն և անհամբեր հարցրեց դահլիճը:

— Լա՛վ սովորեցեք: Ահա ասելիքս,— եզրափակեց Խորենը և նստեց: Երևի առաջին անգամ աշակերտները անկեղծորեն ծափահարեցին այդ կոչի համար ու բարձրացրեցին մի պաստառ, որի վրա գրված էր. «Երևանի 149-րդ դպրոցը Խորեն Հովհաննիսյանից խնդրում է 149 գոլ...»

— Դուք լավ սովորեցեք, ես խոստանու՛մ եմ...— բացականչեց Խորենը, և դահլիճը թնդաց երկարատև ծափերից:

Մարտի 18-ի երեկոյան հրավիրեց իր տուն՝ միասին դիտելու «Ֆուտբոլային տեսությունը»: Ներկա էր նաև իր առաջին մարզիչ Աշոտ Սարիբեկյանը, որն անընդհատ «Խորիկ ջան» էր ասում, իսկ նա՝ «ընկեր Աշոտ»: Այդ երեկո Խորիկը հատկապես շատ գովեց Նիկիտա Սի-

մոնյանին. «Զարմանալի ֆուտբոլիստ է, զարմանալի մարզիչ է, զարմանալի մարդ է»,— ասաց, չիմանալով, որ ինքն էլ է զարմանալի...

Հետո վեց ամսական աղջնակին դրեց ծնկներին ու ասաց. «Միասին ֆուտբոլ նայենք»:

Սպասում էինք, որ ցույց կտան նաև Խորենի գոլը (Մոսկվայի «Դինամոյին»), բայց ցույց տվեցին միայն Համլետ Մխիթարյանի գոլերը: Խորենի անունը չտվեցին: Աչքի տակով նայեցի նրան՝ ոչ մի տխրություն: Հանգիստ նստած էր: Գովեց Համլետին: Քիչ հետո Նիկոլայ Ստարոստինը լավ խոսքեր ասաց հավաքականի մի քանի խաղացողների, այդ թվում Խորեն Հովհաննիսյանի մասին: Աչքի տակով կրկին նայեցի Խորենին՝ ոչ մի ուրախություն: Հանգիստ նստած էր: «Դաշտում էլ այդպես է,— բացատրեց մարզիչը,— անսասան և հավասարակշռված»:

Թերևս բնավորության այդ գծի շնորհիվ է, որ մրցակիցները ինչքան էլ կոպիտ են վարվում Խորենի հանդեպ, նա, ի վերջո, ելնում է և առանց վիրավորանքի շարունակում խաղը...

Գրողների Ծաղկաձորի ստեղծագործական տանն աշխատում էի, երբ այցելեց Խորեն Հովհաննիսյանը: Միասին գնացինք Վարդգես Պետրոսյանի սենյակը: Գրողների միության վարչության նախագահը սիրով ընդունեց և ասաց.

— Ոչ մի գրող այդքան հանրաճանաչ չէ, որքան Խորեն Հովհաննիսյանը:

— Գոլերը կմոռացվեն, գրքերը կմնան,— հանգիստ պատասխանեց Խորենը:

— Պարզվում է՝ համեստ էլ ես... — ուրախացավ Վարդգես Պետրոսյանը:

— Կարծում էիք՝ միայն Իշտոյա՞նն է համեստ... — իր հերթին կատակեց Խորենը: Իսկ երբ ասացի, որ Խորենը շատ է սիրում Տերյան, Պետրոսյանը հիացավ.

— Քո մասին գրելու եմ «Հայկական էսքիզներում»:

Տեսնենք կգրի՞:

Խորենի հարսանիքի սեղանապետն էի: Վերջում պարեցի նորապսակներին: Ի զարմանս շատերի Խորենը անհաջող պարեց: Մի քանի անկանոն շարժումներից հետո շնչառությունն արագացավ: «Հոգնեցի»,— ասաց նա և թաշկինակով սրբեց ճակատը:

— 90 րոպե դաշտում վազում ու չես հոգնում,— զարմացա ես,— ինչպե՞ս հոգնեցիր մեկ րոպե պարից...

— Ես սովոր եմ պայքարի. ոչ թե... պարի,— պատասխանեց Խորենը:

Պատահարար մտանք մի մանկապարտեզ: Երեխաներին հայտնեցի.

— Սիրելի՛ երեխաներ, ահա դուք տեսնում եք «Արարատի» լավագույն ֆուտբոլիստ Խորեն Հովհաննիսյանին... Եկեք միասին ծափահարենք:

Բայց... երեխաները չծափահարեցին: Ընդհակառակը՝ նայում էին կասկածով.

— Խոլենը չէ,— ասացին մի քանիսը:

— Ինչպե՞ս թե Խորենը չէ,— իմ հերթին զարմացա ես,— ինչո՞ւ եք այդպես կարծում:

— Հա շորերով Խորեն է լինո՞ւմ... — զարմացած ասացին երեխաները:

Մի անգամ հարցրի.

— Դարպասապահներ Դասաևը, Չանովը և ուրիշները հավաքականի քո ընկերներն են: Երբ նրանց թիմերին գոլ ես խփում, չե՞ն նեղանում:

— Եթե այդպես մտածենք, ֆուտբոլը կվերանա,— պատասխանեց Խորենը,— սպորտը մնում է սպորտ: Ընդհանրապես՝ մրցակիցները չեն սիրում թույլ ու վախկոտ մրցակցին, իսկ գոլ խփող հակառակորդին ներքուստ սիրում են...

Պատահական չէ, որ Խորենին շատերն են սիրում:

— Ի՞նչ կարծիքի ես հայ ֆուտբոլասերների մասին,— հարցրի:

— Քիչ են հաճախում ստադիոն,— պատասխանեց:

— Եթե թիմը լավ խաղա, շատ կհաճախեն:

— Եթե շատ հաճախեն, լավ կխաղանք,— շարունակեց Խորենը:

— Երևի այդ երկուսը կապված են իրար,— ասացի:

— Ոչ թե՝ երևի, այլ՝ հաստատ,— պատասխանեց Խորենը, ապա ասաց իր սիրած խոսքը,— ուրիշ վարիանտ չկա...

Մի շրջանում Խորեն Հովհաննիսյանի տրամադրությունը խիստ ընկած էր, ուզում էր հեռանալ թիմից: «Գոլ եմ խփում, ասում են՝ սխալ ես խփում...»— գանգատվեց: «Լավ տրամադրությունն ամեն ինչ է ֆուտբոլիստի համար»,— ասաց: Առաջնության սկզբում տրամադրությունը նորից ընկած էր: Այս անգամ պարտություններն էին պատճառը: Բայց հուսանք, որ կբարձրացնի իր, նաև բոլորիս տրամադրությունը:

Կբարձրացնի իր նուրբ արվեստով:

Նա՝ այդ զարմանալի Խորեն Հովհաննիսյանը...

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

# ԵԹԵ ԳԻՏԵՔ...



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Յոթերորդ դասարանցիներ Արշակն ու Գագիկը ֆիզիկայի ստուգողական աշխատանքին պատրաստվելու համար մեկնեցին Արշակենց քաղաքամերձ ամառանոցը:

Օրը շոգ էր և հեղձուցիչ.

— Գիտե՞ս ինչ,— ասաց Արշակը,— շոգին իմ ուղեղը լավ չի աշխատում: Եկ միացնենք սառնարանը, որ սենյակը հովանա:

Գագիկը համաձայնեց: Սառնարանը միացնելուց մեկ ժամ անց, նրանք անցան գործի: Բայց նրանց աշխատանքը երկար չտևեց:

— Արշա՛կ, այսօր լավ չեմ նախանաշել,— գանգատվեց Գագիկը,— քաղցը չի թողնում, որ կարդացածս հասկանամ: Լավ կլիներ մի բան ուտեինք:

Արշակը տնտղեց ամառանոցում եղած ուտելիքի պաշարը և առաջարկեց ձվածեղ ուտել: Գագիկը չառարկեց:

— Ահա և երկու էլեկտրասալիկ: Նրանց պարույրները կարելի է հաջորդաբար միացնել իրար և ձվածեղն ավելի շուտ կլինի,— ասաց Արշակը:

— Իմ կարծիքով ձվածեղն ավելի շուտ կլինի ոչ թե սալիկի պարույրը երկարացնելու, այլ կարճացնելու դեպքում,— առարկեց Գագիկը:

Սալիկներից մեկի պարույրը երկու անգամ կարճացրին և միատեսակ թավաներով սալիկների վրա դրին նույն ծավալի ձվածեղացուները: Պարզվեց, որ Գագիկը ճիշտ է:

Ձվածեղն ուտելիս տղաները խորասուզվեցին ֆիզիկայի համապատասխան թեմայի հարցերի ու խնդիրների մեջ և չնկատեցին, թե երբ մթնեց:

Արշակը միացրեց էլեկտրական լամպը, բայց սենյակն առանձնապես չլուսավորվեց:

— Երևի փոքր հզորության լամպ է,— ասաց Գագիկը:

— 127 Վ, 60 ՎՏ,— բարձրաձայն կարդաց Արշակը և ավելացրեց.— Տեսնեմ, պահարանում երևի ավելի լուսատու լամպ կգտնվի: Այս մեկը 40 վատտանոց է և մեզ պետք չէ: Իսկ այս մեկը թեպետ դարձյալ 60 վատտանոց է, բայց վրան 220 Վ է գրված: Արի միացնենք հենց սա:

Երբ Արշակը կոթառի մեջ մտցրեց լամպը՝ սենյակը լուսավորվեց: Նրանք շարունակեցին իրենց գործը և ուշ երեկոյան միայն ճանապարհվեցին քաղաք:

Ուրախ էին, որ լավ են պատրաստվել ֆիզիկայի ստուգողականին:

Ֆիզիկայի օրենքներին հակասող ի՞նչ պնդումներ նկատեցիք այստեղ:

---

# ԱՅՍՊԵ՞Ս Է, ԹԵ՞ ԱՅՍՊԵՍ ՉԷ

● Նա պահանջ բառը հասկացավ ծնվելու օրից, իսկ պարտք բառը երբեք չըհասկացավ:

● Երեխայի և ծնողի իրար չհասկանալու պատճառը երկուսն է. առաջին՝ երեխան դեռ երեխա է, երկրորդ՝ ծնողը այլևս երեխա չէ:

● Հայրենիքը աղքատ կամ հարուստ չի լինում, լինում է միայն և միայն հայրենիք:

● Նա բռունցքներն այնքան է գործի դընում, որ գլխի կարիք այլևս չունի:

● Երեխան ծնողին դրախտ չի խոստանում, նա դրախտ է բերում իր հետ:

● Տուլությունը մղում է հիմարությունների, հիմարությունները վերածվում են հանցագործության:

● Երբ մարդը համառում է անգիտակցաբար գործած սխալի վրա, սխալը դառնում է գիտակցական:

ԴԵՐԵՆԻԿ ՍԱՐԻԲԵԿՅԱՆ

ԱՂՎԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# Ի՞ՆՉ ԵՆ ՈՒԶՈՒՄ

Գարնան խոտերը ի՞նչ են ուզում,
Ի՞նչ են սվսվում երկարորեն.
Նրանք ուզում են ամռան սրտում
Իրենց ձայները տեղավորել:

Ամռան խոտերը ի՞նչ են ուզում՝
Հպվելով շողին զրնգոցով.
Նրանք տեսնում են իրենց ոսկին՝
Ողողված աշնան սառը բոցով:

Աշնան խոտերը ի՞նչ են ուզում՝
Ցամաք ավիշի վերջին ուժով.
Նրանք ուզում են ձյունը իջնի,
Ծածկի բարությամբ մեղմ ու բուժող:

Ձմռան խոտերը ի՞նչ են ուզում,
Էլ ի՞նչ կարող են նրանք ուզել.
Նրանք ապրում են հին օրերի
Ապարանքների մեջ փիրուզե:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ա. ՆՈԺՆՈՎ

ՈՍԿԵ ՁԿՆԻԿ

## Ա.

Դարեր շարունակ Արևելքն իր հրաշքներով գերել է եվրոպացիներին: Համեմունքով, տարօրինակ կենդանիներով, զարդերով բեռնավորված նավերի քարավանները գալիս էին ու գալիս այդ հեքիաթային աշխարհներից: Դրանց մեջ պատահում էին սկահակներ, հովհարներ, զարդատուփեր արտասովոր ձկների պատկերներով: Բայց այդ ձկներից ոչ ոք Եվրոպայում չէր տեսել և դրանք երկար ժամանակ նկարիչների երևակայության պտուղ էին համարում: Այսպես հարյուրամյակներ շարունակ չինական ու ճապոնական կայսրների պալատներում թաքնված էր աշխարհի հրաշալիքներից մեկը՝ ոսկե ձկնիկը:

Բազում առասպելներ են հորինված նրա ծագման շուրջը: Ըստ այդ առասպելներից մեկի ոսկե ձկնիկները երկնային ապարանքում լողալիս սկսել են այնպես խլպլտալ, որ ամպի ծայրից սայթաքել ու երկիր են ընկել: Ըստ մեկ այլ լեգենդի սոսկալի մի փոթորկի ժամանակ, մոլեգնած օվկիանոսն իր խորքերից արտասովոր գեղեցկության ձկնիկներ է դուրս նետել: Մեկ այլ առասպել պատմում է, որ արնի պես գեղեցիկ մի աղջկա նրա սիրած տղան լքում է, աղջիկը դառնագին լալիս է, և նրա արտասուքից ծնվում են ոսկե ձկնիկները: Ուրիշ առասպելներ էլ կան, սակայն ամենագեղեցիկը, թերևս, ինքը՝ ճշմարտությունն է: Ոչ թե աստվածները ու կախարդները, այլ հասարակ մարդիկ են ստեղծել զարմանալի գեղեցկության ձկներին, որոնք մինչ այդ չէին եղել բնության մեջ:

Ոսկե ձկնիկների յուրաքանչյուր ցեղատեսակի աճեցումը մի քանի սերունդների երկարամյա համառ աշխատանք է պահանջել: Կորեայի բուդդայական տաճարի հոգևորականները մի քանի հարյուրամյակի ընթացքում են կարողացել գնդաձև աչքերով ոսկե ձըկնիկ ստանալ:

Սելեկցիոն (ընտրասերման) աշխատանքը դարձել է կատարյալ արվեստ:

Չինաստանում այս ձկնիկների հայտնվելու առաջին տեղեկությունները գալիս են մեր թվականությունից առաջ V—IV դարերից: Ոսկե ձկնիկի պատկերներ հանդիպում են չինական դպրության ամենավաղ հուշարձաններում և նշանավոր ցեղերի զինանշաններում: Այս ձկնիկները գոյություն ունեին երկ-



րի հարավային գավառների գետերում: Դրանց աճեցմամբ զբաղվում էին արդեն վաղ միջնադարում:

Առաջին եվրոպացին, որը նկարագրել է զարմանալի գունագեղության ձկնիկին, եղել է վենետիկցի հայտնի ճանապարհորդ Մարկո Պոլոն:

Ոսկե ձկնիկները Եվրոպայում հայտնվել են 17-րդ դարում, որպես հազվադեպ, թանկարժեք իր, նվիրում էին միայն թագակիր անձանց:

Ռուսաստանում առաջին ոսկե ձկնիկները հայտնվել են 17-րդ դարի կեսերին: Ճիշտ է, երկար չեն ապրել, սակայն իրենցից հետո բազմաթիվ բանավոր ավանդություններ են թողել: Հնարավոր է, որ Ա. Ս. Պուշկինը «Ձկնորսի ու ձկան մասին հեքիաթը» գրելիս հենց այս ավանդություններից է ներշնչվել:

Ոսկե ձկնիկները Ռուսաստանում հանրաճանաչ դարձան անցյալ դարի 70-ական թվականներից, երբ մոդայի մեջ մտան ակվարիումները: Դրանց հաջողությամբ պահում էին նաև պուրակներում՝ փոքրիկ ջրավազաններում, բաց երկնքի տակ:

Մինչհեղափոխական Ռուսաստանում ոսկե ձկնիկների լավագույն ընտրասերող էր համարվում իշխան Կ. Ֆ. Բարատովը: Ցուցադրելով ձևով ու գույնով անթերի ձկնիկներ, բոլոր ցուցահանդեսներում նա ամենաբարձր պարգևներին էր արժանանում: Այս գործի սիրողների հիշողության մեջ հատկապես անջնջելի են մնացել նրա երկնագույն, մանուշակագույն և կանաչ երանգների ոսկե ձըկնիկների տարատեսակները:

Մեր օրերում այդ աշխատանքը շարունակում է ռոստովցի սելեկցիոներ Վ. Ի. Դամասկին: Նա ոսկե ձկնիկի մի քանի հրաշալի տարատեսակներ է աճեցրել: Վասիլի Իվանովիչը ձկնիկը նախապես նկարում է թղթի վրա, հետո մարմնավորում իր նախագիծը:

Մանրակրկիտ կերպով ուսումնասիրելով հին ձեռագրերն ու այլ գրականություն, զըննելով բազմաթիվ նկարներ ու այլ պատկերումներ, նաև փորձեր դնելով, գիտնականները պարզեցին, որ ոսկե ձկնիկների նախատիպը արծաթափայլ ծածանն է հանդիսանում:

Այս ձկների մեջ ամեն տեսակ այլանդակություններով օժտված սերունդն ընտրելով (առանց լողաթևերի, փքված մարմնով, դուրս պրծած աչքերով, գլխի խուլերով) կորեացիները, ճապոնացիներն ու չինացիները արհեստական ընտրության ճանապարհով աշխատել են այս շեղումները մշտական ձևի վերածել:

Ծնորհիվ փորձարարների մի քանի սերնդի համառ ու մանրակրկիտ հսկայական աշխատանքի՝ հաջողվում էր փոխել ձկների ձևն ու գույնը: Նրանց կերակրում էին հատուկ կերերով, համապատասխան ջրամբարներ ընտրում, լուսավորությունը կարգավորում...

Իսկ XIX դարի կեսերից սկսվեց ոսկե ձկնիկների աճեցումը նպատակամետ ընտրասերման միջոցով: Այսօր ոսկե ձկնիկի հարյուր քսանից ավելի տարատեսակներ են հաշվվում: Վերջիններից մեկը դարչնագույն ձկնիկն է, որին միայն Արևելքում կարելի է տեսնել:

## Բ.

Ոսկե ձկնիկների տարատեսակներ պահելը դժվար չէ: Դրանց համար հարմար են թթվածնային լավ ռեժիմ ունեցող ընդարձակ ակվարիումները: Ակվարիումը ավելի լավ է արևային կողմին նայող պատուհանի մոտ դնել: Հատակին խորհուրդ է տրվում խոշոր գետաքար ու կոկախիճ փռել և միայն մի փոքրիկ տեղում մաքուր գետավազ լցնել, որը ձկնիկները սիրում են շուռ ու մուռ տալ: Ակվարիումի մեջ բույսեր դնելը պարտադիր չէ: Ավելի օգտակար է ֆիլտր դնելը, որը ջուրը մաքրում է պղտորությունից: Բայց եթե ակվարիումի տիրոջը ջրամբարն առանց բույսերի դուր չի գալիս, ապա ամենից ավելի հարմար կգան սագիտտարիան, վալլիսներիան, դեղին ջրաշուշանը, էլոդեան:

Ոսկե ձկնիկներին ընդունված է սառնաջրային համարել, քանի որ նրանք հեշտությամբ են տանում ջերմաստիճանի նվազեցումը, սակայն ամենախայտուն նրանք լինում են 22—24 ջերմաստիճանում: Ջերմաստիճանի խիստ տատանումներն անթույլատրելի են:

Այս ձկնիկներն ամենակեր են: Նրանք հաճույքով ուտում են ինչպես կենդանի կերը (մոծակի թրթուր, կորետրա, տրուբոչնիկ, հողի որդ, էնխիտրեա դաֆնիա), այնպես էլ բուսականը (սալաթ, ջրային ոսպ, ռիչչիա), նաև հացի փշրանք, քերած մսի կտորտանք և թանձր եփած տարբեր շիլաներ: Նրանք շատակեր են, բայց նրանց շատ կեր չպետք է տալ: Հասունացած ձկներին կերակրում են օրը երկու անգամ՝ վաղ առավոտյան և երեկոյան: Տալիս են այնքան, որքան կկարողանան ուտել տաս-քսան րոպեում:

Ցանկալի է, որ ակվարիումը մաքրվի ամեն օր: Նախ խավավոր ջնջոցով կամ թղթի թերթերով զգուշությամբ վերցնում են կեղտը ջրի մակերեսից և սրբում են ապակիները, հետո սիֆոնի օգնությամբ հեռացնում են կեղտն ու կերի մնացորդները: Կեղտի հետ գնացած ու գոլորշիացած ջրի փոխարեն լցնում են թարմ, զուլալված ջուր:

Հասունանում են ոսկե ձկնիկները մոտ մեկ տարեկան հասակում, իսկ ընտրասերման աշխատանքների համար պետք է վերցնել երկու-երեք տարեկաններին: Այդ ժամանակ կլորանում են էգերի փորիկները, արուների խռիկներին սպիտակ մանր ցան է հայտնվում, իսկ կրծքի լողաթևերի առջևի ճաճանչին՝ քաոթեր: Մարտ-ապրիլին արուների ակտիվությունն ավելանում է. նրանք սկսում են հետապնդել էգերին: Այդ ժամանակից սկսած էգերին ու արուներին նստեցնում են ու առատորեն կերակրում: Ձվադրման ակվարիումը պատրաստում են հետևյալ կերպ: Քլորազերծված ջուրը մի քանի ժամ արևի տակ են պահում, հետո լցնում են ախտահանված ակվարիումի մեջ: Մի անկյունում քարով ճնշում են փետրատերևի, էլոդեայի մի մեծ թուփ կամ կեղևաճիլի մանր թելատված մի խրձիկ: Ձվադրման նստեցնում են մի էգ և երկու արու: Ջրի ցածր մակարդակը (15—20 սանտիմետր), ուժեղ օդահագեցումը, վառ լուսավորությունը խթանում են ձվադրմանը: Երկու-երեք ժամում մինչև երկու հազար խավիարահատիկ է դրվում: Ձվադրումից հետո կամ ձկնիկներին են հեռացնում կամ խավիարահատիկներով ծեփված հիմնաթուփն են փոխադրում նախապես պատրաստված ակվարիումի մեջ: Խավիարահատիկների համար չափազանց վտանգավոր է սառեցումը, այդ պատճառով շարունակ պետք է հետևել ջերմաստիճանին:

Հինգերորդ օրը նորելուկ ձկնիկները սկսում են ազատորեն լողալ ու մանրահատ կեր ունել: Աճում են նրանք արագ, և արդեն չորրորդ շաբաթվա մեջ պետք է կատարել առաջին ընտրությունը: Իսկ ընդամենը դրանք պետք է լինեն երեքը կամ չորսը: Խորհուրդ չի տրվում թողնել նորմայից մեծ շեղումներ ունեցող ձկնիկներին: Ձեր ապագա սաները պետք է համապատասխանեն հետևյալ պահանջներին՝ միևնույն մեծությունն ու աչքերի, լողաթևերի ու խռիկների միևնույն ուղղությունն ունենան, ձվաձև մարմին (եթե դա հատուկ է տվյալ ցեղի համար), առանց ձևախախտումների ու արատների, պոչն առանց պատառոտված տեղերի ու գալարների:

Ոսկե ձկնիկների ակվարիումները շքեղ տեսք ունեն և շատ ուրախություն են պատճառում թե երեխաներին, թե մեծահասակներին: Ոսկե ձկնիկները հեշտությամբ ընտելանում են, ճանաչում իրենց տիրոջը և նույնիսկ կեր վերցնում նրա ձեռքից:

ՉԱԲՈՒԱ ԱՄԻՐԷՋԻԲԻ

# ԽԱՅՏԱՌԱԿՈՒԹՅՈՒՆ

Մրջյունների թագավորի ծննդյան օրն էր: Մեղուները իրենց թագուհու հետ գնացին շնորհավորելու:

Մրջյունների թագավորը նրանց ընդունեց մեծ պատվով: Հյուրասիրեց թխվածքներով, տապականներով, մրգերով, չիր ու չամիչով, շուջուխ-ալանիով: Մեղուների թագուհուն էլ ընծայեց արծաթե գոտի ու դաշույն:

Առավոտյան կերուխումը երբ ավարտվեց, մրջյունների թագավորը հրամայեց, որ հարյուր մրջյուն զամբյուղները լցնեն ամենահամով, ամենաքաղցր մրգերով ու առնեն գնան հյուրերի հետ, նվեր տանեն նրանց:

Այսպես, մեղուները տուն էին դառնում ճանապարհին տեսան մրջյունների խաղողի ընդարձակ այգին, տեսան ու մրտքներով անցավ մեկական ողկույզ պոկել ուտել: Մտան այգի, ամեն մեկը մեկական ողկույզ պոկեց և ուտելով դուրս եկան այգուց:

Մրջյունները զայրացան:

— Իսկույնևեթ ցա՛ծ դրեք ձեր պոկածը և քաշվեք գնացեք,— պահանջեցին նրանք:

— Ինչպե՞ս թե...— զարմացան մեղուները,— դուք չէի՞ք, որ մեզ այնպիսի հյուրասիրություն ցույց տվիք, մեր թագուհուն էլ նվիրեցիք արծաթե գոտի ու դաշույն: Հիմա մեկական ողկույզն ի՛նչ է, որ խնայում եք մեզանից:

Մրջյունները պատասխանեցին.

— Այն մենք ինքներս նվիրեցինք, իսկ այս դուք առանց մեզ հարցնելու վերցրեցիք: Եթե խնդրեիք՝ մենք այգու ամբողջ խաղողը կքաղեինք ու մեր ձեռքով կըհասցնեինք ձեր տուն: Բայց առանց հարցնելու մի հատիկ խաղողն ինչ է չենք թողնի, որ տանեք:

Մեղուների թագուհին ամոթից ուզում էր թե գետին մտնի:

— Այս ի՜նչ խայտառակություն էր...

Իսկույն հանեց նվեր ստացած արծաթե գոտին ու դաշույնը, վերադարձրեց ու թռավ գնաց: Մեղուները մրգով լի զամբյուղները թողին ու թռան գնացին, նրա ետևից:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 15. ՃԵՐՄԱԿ ՈՒ ՍԵՎ ՎԻՀԵՐ

Անձավախույզները սիրում են վիհերը: Խավարով ու վտանգներով լցված այդ սև անդունդները մագնիսի նման ձգում են դեպի իրենց:

Ալպինիստներն էլ են ծանոթ վիհերին, միայն թե լեռներում դրանք ուրիշ են, նման չեն իրենց ստորերկրյա «ազգակիցներին»: Ու թեև ավելի գեղեցիկ են, բայց այդ գեղեցկությունը նման է վրադ ցատկող հովազի գեղեցկությանը: Ահա թե ինչու լեռնագնացները չեն սիրում դրանց: Նույնիսկ քիչ է ասել, թե չեն սիրում՝ վախենում են ու ամեն անգամ հանդիպելիս աշխատում են շրջանցել:

Իսկ այդ ի՞նչ ահարկու անդունդներ են դրանք:

Երկնահաս լեռներում հավերժական ձյան սահմանից վերև, ձյունը հաստ շերտերով պատում է ժայռերը: Տասնյակ ու հարյուրավոր մետրերով իրար վրա կիտված ձյան շերտերը սկսում են ճզմել ու մամլել ստորին շերտերին, աստիճանաբար պնդացնելով ու բյուրեղացնելով այն: Այդպես աստիճանաբար առաջանում է կարծր սառցանման ձյան կարկանդակն ու կախվում գահավեժ լանջերից: Հետո այդ շերտն իր ծանրության տակ կոտրվում է՝ նրա մի մասը մնում է լեռան կողին կպած, մյուսը սկսում է կամաց-կամաց սողալ լեռան լանջով և աստիճանաբար հալվելով ու կրկին սառչելով վերածվում է սառույցի: Այդպես ծնվում են լեռնային սառցադաշտերը:

Սառցադաշտի ու վերևում մնացած բեկորի միջև առաջանում են լայն, պատռված բերանով և խորքում նեղացող վիհեր: Նրանք ձմռանը ծածկվում են ձյունե կամուրջներով, որոնք երբ ամռանը փլվում են, հաճախ լեռներին մոտենալը անհնար է դառնում: Որքան նենգ են արևից կայծկլտող պատերով այդ վիհերը. դրանք վիշապների նման պառկած են ամպերի ու երկնքի սահմանագծում և երախները բաց սպասում են իրենց զոհերին: Բայց ալպինիստները գիտեն, թե որտեղ են դարանակալում դրանք և սովորաբար հաջողությամբ խուսափում են դրանցից: Խուսափում են նաև այն ճեղք-վիհերից, որոնք սովորաբար առաջանում են սառցադաշտերի վրա, երբ վերջիններիս ճանապարհին անհարթություններ են հայտնվում: Եթե սառցադաշտը մեղրի նման ծորում-սահում է բլրակի վրայով, ճեղքվում է արտաքինից ու առաջացնում լայն երախով սեպաձև վիհեր: Իսկ երբ ձորակի վրայով է սողում, պատռվում է ներքևի մակերեսն ու առաջանում են «հակառակ» վիհեր՝ բերանները նեղ, ներսը՝ լայն ու լցված կապտաձև մշուշով: Սրանց նեղ բերանները ավելի հաճախ են քողարկված լինում ձյունով և ոչ ոք չի կարող իմանալ գետնի տակ թափառող այդ վիշապների տեղը:

Այս վիհերը որոշ չափով հիշեցնում են ստորերկրյա վիհերին՝ նրանց նման նեղ

մուտքեր ունեն ու խորքում լայնանում են: Բայց այսքանով էլ ավարտվում է դրանց նմանությունը. տարբերությունները ավելի շատ են: Սառցավիհերից գերեզմանային սառնություն է փչում, որը վիհն ընկած լեռնագնացի արյունը սառցնում է հավիտենապես, իսկ ստորերկրյա վիհերը ցրտին տաք են ու ամռանը՝ զով: Սառցե վիհերն իրենց խորքում ոչինչ չեն թաքցնում. միայն երբեմն, երբ հասնում են սառցադաշտի հատակին, հանդիպում են սառույցների տակով հոսող գետերին:

Բոլոր սառցավիհերից, որոնց մեջ ես իջել եմ հետաքրքրությունից մղված կամ էլ գահավիժել, երբ ոտքերիս տակ փլվել է ձյունե կամուրջը, տպավորվել է միայն մեկը: Այդ մեկն էլ ես իջա, որպեսզի հանեմ ցած գլորված ուսապարկը:

Ինձ պարանով իջեցրին վիհի մեջ, որի կապույտ պատերի մեջ լույսի աղոտ շողերը ցրվում էին, ինչպես արևը ծովի խորքում: Այդ կապույտ կիսախավարում ես տեսա ինձանից քիչ հեռու ընկած ուսապարկն ու պարանը արձակելով մոտեցա: Բեռն ընկած էր գետի ափին: Նրա կողքով սոսկալի դղրդոցով հոսում էր այն կատաղի հեղեղը, որը սառցադաշտի եզրին գերությունից դուրս պրծնելով ծընում էր Ադիլսու խենթ գետը: Ես ուսապարկը վերցնելով շտապեցի հեռանալ այդ զարհուրելի վիհից: Նրա կյանքը բոլոր սառցային վիհերի նման օրերով ու ժամերով է չափվում. ամեն վայրկյան կարող է սոսկալի դղրդոցով փակվել սառցադաշտի վիթխարի ճնշման տակ: Ահա թե ինչու են լեռնագնացները սոսկում նրանցից:

Ստորերկրյա վիհերն այդպես չեն: Նրանց կյանքը հարյուր հազարավոր ու միլիոնավոր տարիներով է հաշվվում, իսկ նրանց խավար խորքերում իրենց հայտնաբերողին են սպասում անհայտ ու հրապուրիչ աշխարհներ: Ահա թե ինչու անձավախույզները սիրում են խավարով լցված այդ անհատակ անդունդները: Նրվաճված ամեն մի վիհը նաև անձավախույզի կյանքի մի էջն է:

Հայաստանի անձավախույզներիս համար այդ կենսագրության առաջին էջը անմոռանալի Ջրնգանն էր: Հետո գրվեցին նորանոր էջեր՝ մեկը մյուսից գրավիչ ու հետաքրքիր: Բայց դրանց մեջ առանձնանում է այն էջը, որը մենք կոչեցինք Քարայծի վիհեր:

(շարունակելի)

## ԺՊԻՏՆԵՐ

(ավղանական)

Քննության ժամանակ ուսուցիչը հարցնում է աշակերտին.

— Ասա՛, խնդրեմ, տղա՛ս, որտե՞ղ կարելի է փիղ գտնել:

Աշակերտը մի փոքր միտք անելուց հետո, ասում է.

— Փի՞ղ, պարո՛ն ուսուցիչ:

— Այո՛, այո՛, փի՛ղ: Որտե՞ղ կարելի է փիղ գտնել:

— Փիղն այնքան մեծ է, որ կարիք չկա փնտրելու, որտեղ էլ լինի, կերևա,— պատասխանում է աշակերտը:

Հարևանի կինը հարցնում է մի տղայի.

— Ահմե՛դ ջան, հորդ ձեռն ինչո՞ւ է կապած:

Տղան պատասխանում է.

— Հայրս ձեռքը տարել է ձիու բերանը, որ ձիու տարիքը որոշելու համար նրա ատամները հաշվի, իսկ ձին փակել է, որ հորս մատները հաշվի:

Ուսուցիչը հարցնում է աշակերտին.

— Ասա՛, տեսնեմ, ինչի՞ համար է քիթը:

— Հոտոտելու և նայելու,— պատասխանում է աշակերտը:

— Նայելո՞ւ... ինչպե՞ս թե նայելու:

— Տեսնելու համար ակնոցը չէ՞ որ քթին են դնում:

Հայրը աշխատում է տղային գումարման օրենքը բացատրել.

— Լսի՛ր, տղա՛ս... Սա շատ հեշտ բան է. մեկին ավելացրած մեկ, կլինի երկու, երկուսին ավելացրած երկու կլինի չորս: Հասկացա՞ր:

— Հասկացա:

— Ապրես, դե հիմա ասա՛, երեքին ավելացրած երեք, քանի՞ս կլինի:

— Ո՞նց թե...

— Ի՞նչը ոնց թե:

— Հեշտ հարցերին դու ես պատասխանում, դժվարը թողնում ես ինձ:




# ՏԱԹԵՎԻ ՎԱՆՔԸ

Որոտան...

Հավանաբար գետն այլ կերպ չպիտի կոչվեր: Պղտոր, աղմկոտ, սրընթաց հոսքով նա որոտալով զարնվում է ափերին ու ճեղքում ժայռերը: Այդպես է առաջացել «Սատանի կամուրջը», միաձույլ ժայռեղեն մի բնական կամուրջ, որի տակով խելագար դղրդյունով հոսում է Որոտանը: Այստեղից էլ ոլորապտույտ ճանապարհը մեզ տանում է Տաթևի վանքը:

1931 թ. ուժեղ երկրաշարժն ավերեց Տաթևի վանքը, բայց նույնիսկ այդպես կիսավեր նա շատ տպավորիչ է: Ճարտարապետական այս բարդ միջավայրում, որտեղ կան տարբեր ժամանակներում կառուցված և տարբեր նշանակության շինություններ, ինչպես և ամեն մի վանական համալիրում, այստեղ ևս առանձնանում է գլխավոր կառույցը: Այս օրենքը գործում է նաև բնության մեջ: Անհնար է գտնել նույն սարի ճիշտ կրկնությունը, լավագույն դեպքում նրանք կարող են նման լինել: Որևէ կոնկրետ լանդշաֆտում բնական տարածքի համակարգում մի տարրը, սովորաբար, իշխող է լինում: Դա կարող է լինել սար, ծով, գետ, հարթավայր և այլն: Մնացած տարրերը ինչ-որ կերպ ենթարկվում են նրան:

Անիմաստ, անհեթեթ կլինի եթե շենքի հանդիսավոր ու խնամքով մշակված ճակատը նայի բակին: Դա նույնն է, թե խոսակցիդ նկատմամբ մեջքով կանգնես:

Թամանյանը Երևանի գլխավոր հրապարակի կառավարական շենքը նախագծելիս նկատի է առել այն հանգամանքը, որ բարդ կառուցվածք ունեցող այդ շենքը չի կարող հավասարազոր ճակատներ (ֆասադներ) ունենալ: Մի ճակատով շենքը ուղղված է հրապարակին, որը ամենից հանդիսավոր ու շքեղն է: Մյուս ճակատով նայում է հրապարակ մտնող փողոցին, որ պակաս հանդիսավոր ու շքեղ է, երրորդ ճակատը նայում է երկրորդական նշանակության փողոցին, զուսպ է ձևավորված:

Տաթևի վանքի տարածքում անվիճելի գերազանցությամբ հառնում է գլխավոր տաճարը: 895 թ. հիմնված այս հսկան պարզորոշ երևում է հեռու տարածությունից: Նրա հզոր, առնական պատկերն ուրվագծվում է կիրճի հանդիպակաց սարալանջին, և վանքի տարածքում գտնըվող մնացած շինությունները թվում են երկրորդական: Երկրորդական՝ գլխավոր տաճարի հետ համեմատած, իսկ առանձին-առանձին նրանցից յուրաքանչյուրն ինքնատիպ ու հետաքրքիր շինություն է:

Գլխավոր տաճարի հարավային կողմում մանր քարերից կառուցված մի զարմանալի սյուն կա: Հազվագյուտ մի խաչքարով ավարտվող այդ սյունը մեղմ

տատանումներով ճոճվելիս է եղել: Դա զարմանալի չէր թվա, եթե կառուցված լիներ բետոնից, մինչդեռ քար է, և կառուցվածքը բոլոր օրենքների համաձայն ճկուն չպիտի լիներ: Երկրաշարժից հետո սյան այդ առեղծվածային հատկությունը չքվեց ու մեզ մնաց ճոճվող սյան առասպելը միայն: Ճոճվող սյունից բացի, վանքի տարածքում կառուցվել են սեղանատուն, գրատուն, դամբարան, արհեստանոցներ և այլն: 10-րդ դարում գլխավոր տաճարի ներսն ամբողջությամբ պատվել է որմնանկարներով: Հետագա դարերում վանքը շատ անգամ ենթարկվել է բնական ու արհեստական բազմաթիվ աղետների: Հայկական շատ վանքերի նման Տաթևի վանքն էլ վանք լինելուց բացի նաև ամրոց է եղել և ապաստան՝ շրջակա գյուղերի բնակչության համար: Վանքի հարթավայրին հարող մասն ամբողջովին պարսպապատ է, իսկ կիրճին նայող կողմը՝ կատարելապես անմատչելի: Զանգեզուրյան վայրի բնության մեջ Տաթևի վանքը չի հակադրվում բնությանը, նույնիսկ հակառակը՝ այնպես է ներդաշնակում, որ կարծես նրա մի մասը լինի:

Ավանդությունը պատմում է, որ վարպետը տաճարը կառուցել է այնքան ինքնամոռաց ներշնչմամբ, որ գմբեթի վերջին քարը դնելուց հետո է նկատել, որ աստիճաններ չի թողել ներքև իջնելու համար և հուսահատված բացականչել է. «Աստված տա թև»:

Վանքի դիրքից, նրա գլխավոր տաճարի չափերից իսկ կարելի է պատկերացնել, թե ինչ փառահեղ անցյալ է ունեցել միջնադարյան Հայաստանի այս նշանավոր կրոնական կենտրոնը: Եվ ինչու՞ միայն կրոնական, նաև գիտական ու մշակութային, նաև հասարակական ու գաղափարական: Այստեղ գործել է նշանավոր Տաթևի համալսարանը, որի պատերի ներսում Գրիգոր Տաթևացին ու շատ ուրիշ վարպետներ դասավանդել են մանրանկարչություն, կազմարարություն, մագաղաթի մշակում, ճարտասանություն, մատենագրություն:

Չնայած երկրաշարժի, չնայած թալանի ու ավերի, կյանքն ընթացել է իր հունով, գոյատևել է հայոց ճարտարապետական արվեստի այդ կոթողը՝ ի հեճուկս թշնամյաց ու կործանիչ ժամանակի:

**ՆՈՒՆՈՒՓԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ**
ճարտարապետ

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ




**(Տևել է մարտի 9-ից ապրիլի 7-ը)**

**Հայոց տոմարի 8-րդ ամիսն է: Միջնադարի մեծ իմաստասեր, տնտեսագետ, նկարիչ, երաժշտագետ և հանրագիտակ, Տաթևի համալսարանի ռաբունապետ (ռեկտոր) Գրիգոր Տաթևացին (1346—1409) իր «Գիրք հարցմանց» հանրագիտարանում գրում է, թե Արեգ էր Հայկ Նահապետի դուստրերից մեկի անունը: Նույնն են ասել նաև Անանիա Շիրակացին և Հովհաննես Իմաստասերը:**

**Վանական Վարդապետի կարծիքով Արեգ ամսանունը ծագում է Արեգակ բառից, քանի որ տարվա այդ եղանակին Արեգակի զորությամբ բույսերն առավելագույն չափով զարթնում և փթթում են: Արեգ ամսանունը արև բառից է բխեցնում նաև Հրաչյա Աճառյանը: Արեգ է կոչվում նաև յուրաքանչյուր ամսվա մեկը:**

**Արդի գիտնականների մեծամասնությունը այդ ամսանվան ծագումը կապում է հայոց հեթանոսական դիցուհի Արեգ աստվածուհու հետ:**



ԲՈՐԻՍ ՌՅԱԲԻՆԻՆ

# ԸՆՁՈՒՂՏԸ ՄՐՍՈՒՄ Է

ՆԿ. ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

Ընձուղտը ապրում է Շվեդիայի մայրաքաղաք Ստոկհոլմի կենդանաբանական այգում: Այգին լավն է, այնտեղ կենդանիներին հոգատարությամբ են շրջապատում, բայց ընձուղտը ծնվել և մեծացել էր Աֆրիկայում, իսկ Ստոկհոլմը, ինչպես գիտեք, Սկանդինավյան թերակղզու վրա է, Եվրոպայի հյուսիսում: Այստեղ կլիման բոլորովին այլ է: Ցրտերն ընկան թե չէ, ընձուղտը սկսեց հազալ և փռշտալ:

Երեխաները խղճացին ընձուղտին:

Կոնրադը (այդպես էին կոչում ընձուղտին) բոլորի սիրելին է: Հենց որ երեխաները գալիս են, նա իր երկար վզով ցանցի վրայից ձգվում է ցած և իր փափուկ շրթունքներով վերցնում նրանց մեկնած ուտելիքը: Շատ վստահող է: Գլուխը մեծ չէ, ունի փոքրիկ եղջյուրներ: Բարձրացնում է գլուխը, բարձրից հայացք նետում բոլորին, ծամում, կուլ է տալիս ուտելիքը, էլի՛ է ձգվում դեպի երեխաները: Աչքերը խոնավ են, բարի, կարծես ուզում են ասել՝ «Դե, երեխաներ, դուք ձեր տանն եք, ձեզ համար լավ է, իսկ ե՛ս...»

Պետք է օգնել Կոնրադին:

Սվենը վազեց Կնուդենց, հետո միասին գնացին Ֆրիտյոֆի մոտ: Գործի անցան նաև աղջիկները՝ Գլորիան, Ինգրիդը, նրանց ընկերուհիները: Երեք հարյուր դըպրոցականներ որոշեցին օգնել ընձուղտին:

Շիկավարս Գլորիայի մայրը բրդե թելերից հրաշալի գուլպաներ, թաթմաններ, վզնոցներ և գլխարկներ է գործում: Տա՛ք, տա՜ք, որ հագնում ես, կարծես էլեկտրական ջեռակ ես առել վրադ: Երևի Գլորիան հենց դրա համար էլ երբեք չէր հիվանդանում, քանի որ մայրն այդպես հոգատար էր: Նա իր դստրիկին էլ էր սովորեցրել շյուղերով և հերյունով արագ-արագ գործել: Գլորիան գլխավոր վարպետը դարձավ, Կնուդն ու Սվենը հանձն առան բոլորին կազմակերպել: Չարաճճի տղաները, որ հաճախ աղջիկների ծամիկներն էին քաշում, հիմա մեկից-մեկ փոխվեցին, համախմբվեցին:

Երեք հարյուր երեխա, և բոլորի համար էլ աշխատանք գտնվեց:

Դրամ էր հարկավոր բուրդ գնելու համար: Սկսեցին տնտեսել նախաճաշի հաշվին: Ծնողները զարմանք էին կտրել. այս ի՞նչ ախորժակ են ձեռք բերել իրենց տղան կամ աղջիկը, առաջ դպրոցից կըգային, կխնդրեիր, կե՛ր, կե՛ր, իսկ հիմա վրա են պրծնում ուտելիքին, դու միայն՝ հասցրու: Երեք հարյուր երեխա գործը գաղտնի էին պահում, և ծնողները երկար ժամանակ չգիտեին, թե ի՞նչ է կատարվում:

Վերջապես անհրաժեշտ գումարը հավաքվեց: Երեխաների պատվիրակությունը ուղիղ Յուխանսոնի մոտ գնաց: Սրա խանութը ձևի համար էր միայն կոչվում նըպարեղենի. այստեղ ուտելիքից բացի, այլ բաներ էլ են վաճառվում: Իսկ բուրդ ինչքան ասես կա: Գնեցին ամենագեղեցիկ, ամենափափուկ և ամենատաք բուրդը: Բուրդը իրենք էլ մանեցին: Իսկ ինչպե՛ս էին գործում: Բոլորը, հերթով, նույնիսկ տղաները: Ի դեպ, սկանդինավցի տղամարդկանց համար հազվագյուտ բան չէ գործել իմանալը: Նրանցից ոմանք նույնիսկ կանանցից լավ են գործում: Ահա և տղաներն էլ, աղջիկներից ոչ պակաս, վարժվեցին այդ գործին:

Ամենից առաջ Գլորիայի մայրը գաղտնիքն իմացավ: Ինչպե՞ս թաքցնես: Մայրական խորհրդի կարիք զգացվեց, ախր շատ անսովոր գործ էին բռնել երեխաները: Գլորիան ինքը ամեն ինչ պատմեց մորը: Եվ լավ էլ արեց: Այլապես, գուցե և չկարողանային տակից դուրս գալ: Գլորիայի մայրը օգնեց և՛ մանելում, և՛ գործելում:

Ո՛չ, ո՛չ, ամեն ինչ իրենք էին անում, Ֆրյոկեն Իլզան միայն ցույց էր տալիս: Շնորհակալություն, բարի Ֆրյոկեն Իլզա, որ դուք էլ օգնեցիք Կոնրադին:

Եվ ահա օրը եկավ... պատկերացրեք. ի՛նչ օր էր: Երեք հարյուր տոնականորեն հագնված երեխաներ կենդանաբանական այգի եկան, որպեսզի Կոնրադին նվեր հանձնեն: Ծառայողները սկզբում չհասկացան, թե այդ ինչ են երեխաները քարշ տվել-բերել: Բացեցին կապոցը: Ու՞մ համար է այս վզնոցը, տարակուսեցին նըրանք: Ինչպե՛ս թե ում համար է: Կոնրադի՛: Որպեսզի էլ չմրսի: Գիտեք, չէ՞, ինչ վիզ ունի: Վզի չափով էլ վզնոցն է:

Ահա այսպես շվեդ երեխաները խըղճացին ընձուղտին, փրկեցին նրան ցըրտից:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

# ՋՐՈՒՅՑ

Գովում էր ձուկը
Լեռնային գետը,
Երբ գորտին տեսել,
Խոսում էր հետը:
— Գո՛րտ ախպեր,— ասաց,—
Ի՞նչ կա էդ ճահճում,
Լավ չէ՞, գաս ապրես
Այս մաքուր գետում:
— Ես այս եմ տեսել
Իմ մանկությունից,
Իսկ դու խոսում ես
Ի՞նչ մաքրությունից:
Այս ցեխն եմ տեսել,
Այս տիղմն ու խիճը,
Հարազատ է ինձ
Իմ այս ճահիճը:
Այստեղ մենք ունենք
Հազար ու մի կեր,
Ճահճում կյանքն հեշտ է,
Իմ ազնի՛վ ընկեր:
Իմ ձկնի՛կ ախպեր,
Քեզ՝ քո մաքուրը,
Իսկ ինձ հարմար է
Այս պղտոր ջուրը:



Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

# ՏՐՈՊԻԿԱԿԱՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Աշխարհի բնակչության մեծամասնությունը՝ մոտ 3 միլիարդ մարդ, ապրում է արևադարձային և մերձարևադարձային գոտիներում, որտեղ տարածված են շատ վտանգավոր, տարափոխիկ տրոպիկական հիվանդություններ: Դրանց հարուցիչների փոխանցողներն են մարդկության թշնամիներ մոծակները, ցե-ցե ճանճը, «համբույրային» փայտոջիլը և այլն:

Ամենահամեստ հաշիվներով նշված գոտիներում 200 միլիոն մարդ տառապում են տենդախտով (մալարիա), 900 միլիոնը վարակված են հելմինտներով (ճիճուներ), տասնյակ միլիոններ՝ տրիպանոսոմոզ կոչվող հիվանդությամբ և մոտ 10 միլիոնը բորոտությամբ: Այս հիվանդությունները առավել հաճախ հանդիպում են հետամնաց և նոր զարգացող աֆրիկական և լատինաամերիկյան երկրներում, որոնք հիշյալ ծանր ժառանգությունը ստացել են նախկին գաղութատիրական կարգերից: Նրանք սեփական ուժերով ի վիճակի չեն վճռելու իրենց առաջ ծառացած հարցերը: Ուստի առողջապահության համաշխարհային ասամբլեան կոչ է արել բոլոր երկրներին օգնության ձեռք մեկնել նրանց: Մեր մեծ հայրենիքը, զերծ լինելով հիշված ախտերից, իր վեհ ինտերնացիոնալ պարտքին հավատարիմ, ակտիվորեն մասնակցում է ծավալված դժվարին պայքարին: Ինչո՞վ են վտանգավոր այդ հիվանդությունները: Հիշենք դրանցից թեկուզ տրիպանոսոմոզը: Մասնագետները տարբերակում են աֆրիկյան տրիպանոսոմոզը կամ քնախտը և ամերիկական կամ Չագասի հիվանդությունը: Առաջինը տարածված է Աֆրիկայում, Սահարայի անապատից դեպի հարավ: Դրա հարուցիչն է փոքրիկ մանրադիտակային, տրիպանոսոմա մտրակավոր նախակենդանին, իսկ փոխանցողն է ցե-ցե արյունածուծ ճանճը: Աֆրիկայի մոտ 11 միլիոն քառակուսի կիլոմետր տարածքը, որտեղ հանդիպում է այդ ճանճը, կոչում են «ցե-ցեի թագավորություն»: Հիվանդությունն իր «քնախտ» անունը ստացել է այն պատճառով, որ վարակվածները ունենում են քնելու անհաղթահարելի ձգտում, նրանք հյուծվում են, իսկ չբուժվելու դեպքում՝ մահանում: Հարուցիչի որոշ տեսակները ախտավորում են նաև կենդանիներին, որի հետևանքով «ցե-ցեի թագավորությունում» հնարավոր չէ անասնապահության համար օգտագործել աֆրիկական հսկա արոտավայրերը, որոնք կարող կլինեին սնել մոտ 125 միլիոն գլուխ ընտանի կենդանիների: Իսկ այդ նշանակում է, որ մարդկությանը ցե-ցեն զրկում է 1,5 միլիոն տոննա մսեղենից: Պակաս վտանգավոր չէ նաև ամերիկական տրիպանոսոմոզը, որով այժմ տառապում է 10 միլիոն մարդ, իսկ 35 միլիոն էլ գտնվում են վարակման ուղղակի վտանգի ներքո: Այս հիվանդությունը առավել վտանգավոր է դեռահասների համար:

Հիվանդության փոխանցողն է «համբույրային» փայտոջիլը, որ մինչև 2,5 սմ երկարությամբ տափակ արյունածուծ միջատ է: Հանրահռչակ գիտնական Չարլզ Դարվինը իր Հարավային Ամերիկա կատարած ճանապարհորդության ժամանակ (1831—1836 թթ.) տեսել և նկարագրել է այդ միջատին: Նա անգամ հետաքրքրությունից դրդված թույլ է տվել, որ միջատը սնվի իր արյունով, բայց այդպես էլ մնացել է անտեղյակ, որ ինքն իրեն վարակել է մի սարսափելի հիվանդությամբ: Չէ՞ որ նրա ապրած ժամանակներում մարդկությունը չգիտեր այդ հիվանդության մասին, որը հայտնաբերեցին 1909 թվին: Միայն Դարվինի վարակվելուց 125 տարի հետո գիտնականները ուսումնասիրելով նրա ինքնակենսագրությունը, օրագրերը և հիվանդության պատմությունը, կարողացան այդքան ուշացումով ախտորոշել, որ մեծ գիտնականը տառապել է Չագասի հիվանդությամբ:

ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ

Լուսանկարը՝ ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

---

Հանձնված է տպագրության 23.05.1984 թ.։ Ստորագրված է տպագրության 3.08.1984 թ.։ ՎՖ 11881· Թուղթ օֆսեթ, 70×100¹/₁₆։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 64032։ Պատ. 1288։ Գինը՝ 15 կ.։

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 23.05.1984 г. Подписано к печати 3.08.1984 г. Формат 70×100¹/₁₆. ВФ 11881. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 64032. Заказ 1288. Цена 15 коп. Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806



ՄԻՆԱՍ ԱՎԵՏԻՍՅԱՆ— «ՋԱՋՈՒՌ»